# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ։

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15։ ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 5. 90



*Հանձնված է արտադրության 02.03.90 թ.։ Ստորագրված է տպագրության 01.06.90 թ.։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 51332։ Պատվեր 224։ Գինը՝ 15 կոպեկ։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 02.03.90 г. Подписано к печати 01.06..90 г. Формат 70×100 1/61. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 51332. Заказ 224. Цена 15 коп.

Напечатано в типографии изд.-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



Շապիկի 1-ին էջին՝ Հայաստանի Հանրապետության զինանշանը 1918—1920 թթ.



# ՏԵՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹՔ

Հայր մեր, որ յերկինս ես,
սուրբ եղիցի անուն քո.
սուրբ եղիցի անուն քո.
եղիցին կամք քո՝
որպէս յերկինս եւ յերկրի:
Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր,
եւ թող մեզ զպարտիս մեր,
որպէս եւ մեք թողումք մերոց
պարտապանաց
եւ մի տանիր զմեզ ի փորձութիւն,
այլ փրկեա զմեզ ի չարէն.
Զի քո է արքայութիւն եւ զօրութիւն
եւ փառք յաւիտեանս: Ամէն:

Հայր մեր, որ երկնքումն ես,
Թող սուրբ լինի քո անունը,
Թող քո թագավորությունը գա,
Թող քո կամքը լինի ինչպես
երկնքում, այնպես էլ երկրի վրա.
մեր հանապազօրյա հացը տուր
մեզ այսօր և ներիր մեզ մեր պարտքերը,
ինչպես և մենք մեր
պարտապաններին, և մի տանիր
մեզ փորձության, այլ փրկիր մեզ չարից,
որովհետև քոնն է թագավորությունը,
և զորությունը, և փառքը հավիտյանս.
Ամեն:

# ՀԱՅՐ ՄԵՐ

Andante.

Դ.Գ.

Հայր մե - ր ո ր յեր-կինս ես, սուրբ ե - ղի-ցի ա-նուն քո.

ե - կե ս-ցէ ար - քայ-ու - թիւն քո, ե - ղի-ցին կամք քո ո - ր-պէս յեր -

կինս և յե - - ր - կրի. զհաց մեր հա - նա - պա-զորդ տուր մեզ ա - - յ -



# ՀԱՅՐ ՄԵՐ

Այսպես է կոչվում բովանդակ քրիստոնեական եկեղեցու ամենատարածված ու սիրված աղոթքը:

Այն կոչվում է նաև «Տերունական աղոթք», միակը իբրև այդպիսին, որովհետև, ըստ Ավետարանի, այն իր աշակերտներին սովորեցրել է ինքը՝ Քրիստոսը:

Այն աչքի է ընկնում իր սեղմ ու հակիրճ կառուցվածքով և միաժամանակ բովանդակության ամբողջականությամբ: Ըստ Մատթեոսի՝ Քրիստոս հորդորում է իր աշակերտներին, որ աղոթելիս շատախոս չլինեն հեթանոսների նման, որոնք կարծում են, թե շատ խոսելով լսելի պետք է լինեն:

— Արդ մի նմանվեք նրանց, որովհետև ձեր հայրը մինչ ձեր խնդրելը, գիտի ինչ է ձեզ պետք:

— Արդ դուք այսպես աղոթեցեք:

— Հայր մեր որ յերկինս ես...

Իսկ Ղուկաս Ավետարանիչը պատմում է այլ կերպ.

— Եվ երբ մի տեղ աղոթք էր անում, և երբ վերջացրեց, իր աշակերտներից մեկն ասաց նրան.

«Տէր, սովորեցրու մեզ աղոթել, ինչպես Հովհաննեսը սովորեցրեց իր աշակերտներին»:

Եվ ասաց նրանց. «Երբ աղոթեք, ասացեք...»:

— Հայր մեր որ յերկինս ես...

«Հայր մեր»-ը մեր ծիսակարգի ամենահին աղոթքն է, այն հավանաբար հայերեն թարգմանվել է Գրիգոր Լուսավորչի կողմից չորրորդ դարի սկզբին:

Հայտնի է, որ հայաստանյաց Առաքելական Ս. եկեղեցու բոլոր ժամերգությունները ու ծեսերը սկսվում են և ավարտվում «Հայր մեր»-ով: Այն յուրաքանչյուր քրիստոնյա հավատացյալի հանապազօրյա աղոթքն է, որով հաղորդակցվում է Աստծու հետ:

«Հայր մեր»-ը հնուց ի վեր դարձել է նաև երգ քրիստոնյա բազմաթիվ ազգերի ու ժողովուրդների համար, և այն ոչ թէ միայն եկեղեցում է երգվել, այլ նաև եկեղեցուց դուրս, զանազան ժողովրդական խրախճանքների ու հավաքների ժամանակ:

Դժվար է ասել, թե երբ կամ որ դարում են ծնվել այդ մեղեդիները, սակայն կարող ենք հաստատ կերպով հավաստել, որ դրանք, ինչպես հայկական ավանդական պատարագի տարբերակների մնացած հատվածների ու «Հայր մեր»-ի մեղեդիները, բխում են մեր տոհմիկ հոգևոր երգասացության ջինջ ու հարազատ ակունքներից:

Ուստի՝ այն դարձել է մեր ժողովրդի «Հայր մեր»-ը, և մեր ժողովուրդը այսուհետև ևս պետք է երկյուղածությամբ ու գուրգուրանքով պահի այն իր հոգում, երգի ու երգելով փոխանցի գալիք սերունդներին ու դարերին:

ԽՈՐԵՆ ՊԱԼՅԱՆ



ԶՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ

# ԴԻՄԱԿԱՅՈՒԹՅՈՒՆ, ԴԻՄԱԳՐԱՎՈՒՄ

Առավոտյան ժողովրդական դեպուտատների նստաշրջանում նախագահողը հայտնեց ակադեմիկոս Սախարովի մահվան մասին: Դահլիճը քարացավ, շատերը չգիտեին, իսկ ես դժբախտաբար գիտեի, Երևանից էին զանգել-հայտնել տխուր լուրը, որը տարածվել էր երկրագնդով մեկ: Շտապեցի այնտեղ, որտեղ սովորաբար նստում էր Սախարովը: Աթոռին արդեն 2 մեխակ կար, դրանք առաջին ծաղիկներն էին: Հետագայում այդ բազկաթոռը կորել էր մոսկովյան ձմեռային ծաղիկների ծանրության տակ:

Համենայն դեպս անհնար էր հավատալ: Ընդամենը 48 ժամ էր անցել մեր վերջին հանդիպումից: Ես նստաշրջան էի բերել Երևանում նոր լույս տեսած իմ գիրքը երկրաշարժի մասին, որտեղ պատմվում է նաև ակադեմիկոս Սախարովի հետ դժոխային աղետից կործանված Սպիտակ մեր այցելության մասին: Նախօրեին զանգել էի տուն և հարցրել՝ գալո՞ւ է նիստի, որպեսզի կարողանամ նվիրել գիրքը, որն անվանել եմ «Դիմակայություն»: Նա ասաց, որ շատ է սիրում այդ բառը՝ դիմակայություն: Գիրքը մակագրությամբ հաջորդ օրն առավոտյան հանձնեցի նրան:

Մեծ ընդմիջումից առաջ Սախարովը դանդաղ մոտեցավ ղարաբաղյան դեպուտատների շարքին, ինձ նշան արեց դուրս գալ և քրիստոսյան իր ժպիտով ցույց տվեց գրքի մեջ մեկ անգամ վրիպած իր հայրանունը՝ Պետրովիչ: Գիրքը լույս է տեսել երեք լեզվով՝ հայերեն, ռուսերեն, անգլերեն մեկ կազմի մեջ, և երբ ստուգեցի, տեսա, որ հայերեն տեքստում էլ սխալ էր՝ Պետրովիչ: Զարմանալի, արտակարգ հիշողություն ուներ Սախարովը: Նա հիշեց, որ գրքի լույս ընծայման օրերին ես Մոսկվայում էի, հետևաբար չէի կարդացել սրբագրությունը, որով սխալները չէին ուղղվել: Ճիշտ էր:

Որոշ ժամանակ մենք դեռ խոսում էինք նաև շրջափակման մասին: Նկատելով, որ արտասահմանյան հեռուստա-

լրագրողների մի ամբողջ երամ առաջ մեկնած միկրոֆոններով շրջապատում է նրան, շտապ խնդրեցի ետ վերադարձնել գիրքը, որի մեջ ինքը կարևոր նշումներ էր արել, խոստանալով նույնպիսի մակագրությամբ ուրիշը բերել: Սախարովն ինձ մեկնեց գիրքը, կրկնելով՝ «դիմակայություն» խոսքն իրեն դուր է գալիս: Նույն րոպեին էլ հեռուստալրագրողները նրան գերեցին, ենթադրում եմ, որ դա, երևի, ամենավերջին ինտերվյուն էր, որ տվեց գիտնականը օտարերկրյա լրագրողներին: Գուցե սխալվում եմ, չէ՞ որ նա դեռ մեկ լրիվ օր էլ ապրեց...

Հսկայական դահլիճում նստած, ակամայից ունկնդրելով երկրի մինիստրների խորհրդի նախագահի զեկուցման շուրջը բանավիճողներին, անընդհատ ինձ բռնում էի այն իրողության մեջ, որ մտածում եմ միայն Սախարովի մասին. ձեռքս դեպի ծոցատետրս էր ձգվում և գրում էր, կարծես չենթարկվելով ուղեղիս՝ «Դադարեց բաբախել մեր մեծ ժամանակակցի սիրտը, սիրտը մի մարդու, որն այրվում էր ջահի պես: Լուսավորելով ուրիշներին, ինքն այրվեց: Հայ ժողովուրդը անմահների շարքը դասեց անվեհեր մարդասերին: Մեզ համար ամենաողբերգական օրերին Սախարովը մեզ հետ էր: Մենք նրան տեսանք շրջափակված Ղարաբաղի լեռնային դառնաղետ ճամփաներին, հրեշավոր երկրաշարժի հետևանքով փլատակված Սպիտակում: Մեր ժողովուրդն իր հիշողության մեջ կպահպանի մեծ քաղաքացու կերպարը, ինչպես պահում է Նանսենի և Վերֆելի կերպարները: Երախտապարտ ենք ճակատագրին, որ ապրեցինք Սախարովի դարաշրջանում, լսեցինք երկրագնդի խիղճը դարձած կըրքոտ մարտիկի փոքր-ինչ խուլ, անկիրք ձայնը»...

Պոկեցի թերթիկը, կարդացի. ոչ ես այն տողը չէի ընտրել, ուրիշ բանի մասին էի ուզում գրել: Սախարովը իր տիկնոջ, Հայաստանի Կենտկոմի առաջին քարտուղար, շուշեցի Գևորգ Ալիխանյանի դստեր՝ Հեղինե Գևորգովնայի հետ Արցախ այցելեց այն օրերին, երբ ադրբեջանցիները հիստերիկ աղմուկ էին բարձրացրել այսպես կոչված Թոփխանայի պրոբլեմի շուրջը: Գիտնականը ցանկացավ տեղանքին նայել Շուշիի սարահարթից: Բանն այն է, որ Բաքվում ստեր էին տարածել, իբր հայերը, արհամարհելով էկոլոգիական կանոնները, հատում են հին դարաշրջանից մնացած անտառները: Սախարովը համոզվեց, որ այդ վայրերում ոչ միայն անտառ, այլ մի ծառ անգամ չկա:

Երբ Ստեփանակերտ վերադարձանք, կուսակցության մարզկոմի նիստերի դահլիճում հանդիպում տեղի ունեցավ Սումգայիթից, Բաքվից, Կիրովաբադից եկած փախստականների հետ: Բոլորը, բնականաբար, Սախարովին էին դիմում: Հեղինե Գևորգովնան գրառումներ էր անում: Ես նախագահում էի և լավ եմ հիշում ամեն ինչ: Անդրեյ Դմիտրիևիչը ամենասոսկալին համարեց այն փաստը, որ ջարդերին և բռնություններին մասնակցել են նաև դեռահասները, նույնիսկ երեխաները: Նա նշեց, որ մեկ օր առաջ Երևանում նույն այդ քաղաքներից հըրաշքով փրկված փախստականների հետ հանդիպման ժամանակ նույնպիսի դառն ու սարսափելի պատմություններ լսեցին:

Առաջին հայացքից հիվանդ թվացող, խաղաղ և նույնիսկ վեհերոտ տեսքով այդ մարդը զարմանալի հիշողություն ուներ: Այդ հետո, տառացիորեն մի քանի ժամ հետո, երբ դեռ մեր ականջներում հնչում էր նրա ձայնը, կսկսեն գրել, որ Սախարովի ճակատագիրը, նրա ներդրումը գիտության, մշակույթի, հասարակական մտքի զարգացման մեջ կդասվեն դարի ամենավառ երևույթների շարքը: Որպես գիտնական, հետազոտող, նա բացառիկ տաղանդ ուներ, նա մինչև իր վերջին ժամը փրկում էր աշխարհը, և սգալով մեծ կորուստը ու խոնարհվելով նրա հիշատակի առջև՝ որպես ազնիվ և անվեհեր քաղաքացու, մենք հրաժեշտ չենք տալիս Անդրեյ Դմիտրիևիչի կերպարին:

Այս բոլորը, սակայն, մահից հետո: Իսկ կենդանության ժամանակ ավելի լըռում էին: Նրա տաղանդի մասին ցածր ձայնով էին խոսում:

Կրկնում եմ, Սախարովը բացառիկ հիշողության տեր էր, նա հիշում էր, երբ են թաթարներին Ղրիմից հանել, երբ է Լեռնային Ղարաբաղը Հայաստանին միացնելու մասին Գրիգոր Հարությունովը Ստալինին գրած նամակը ստորագրել, որ թվին եմ ես Կամչատկայից իր մոտ եկել և ում հետ: Ակադեմիկոսը գիտեր

մարդկանց և ժողովուրդների ճակատագրերի մասին, հիշում էր իրադարձությունների տարեթվերը: Նա ապրում էր ուրիշի ցավով, պայքարելով աֆղանական պատերազմի դեմ: Նա Մոսկվայից աքսորվեց, որովհետև չէր ուզում, որ իր երիտասարդ ժամանակակիցները կործանվեն անիմաստ, անհեթեթ պատերազմում: Փրկելով որդիներին, փրկում էր մայրերին: Սակայն երբ մայրերից մեկը, որի որդին գուցե փրկվել էր Սախարովի շնորհիվ, ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի ամբիոնից վիրավորեց և անիծեց նրան, դահլիճը կես ժամ ծափահարում էր:

Երբ նիստից հետո ես նրան ուղեկցում էի մետրոյով, ասացի, որ վրեժխնդիր և հիշաչար պատմությունը այդպիսի ելույթները չի ներում, պատժում է: Սախարովը առարկեց, ասելով, որ այն կինը, ինչպես և որդին աֆղանական պատերազմի զոհեր են, որ նրան պետք է հասկանալ ու ներել:

Իսկական մարդասերը միշտ զոհի կողմը պետք է լինի: Իսկ դահլիճի աղմուկն ու դոփյունը այս դեպքում պետք է ողջունել: Ժամանակը ամեն ինչ կշտկի: Այն ոչ միայն բուժող է: Ժամանակը քանդակագործ է: Այն հրաշքներ կարող է գործել: Ժամանակը անզոր է միայն, երբ անհրաժեշտ է մխիթարել տխրությունը, ժողովրդի ցավը:

... Սպիտակը տխրություն է և ցավ, ասաց Անդրեյ Դմիտրիևիչը, երբ վերադառնում էինք Սպիտակից Երևան: Ուղղաթիռում նկատեցի՝ նրա աչքերը ուռած էին: Երեք տանջալի օրեր աղետի գոտում... Հասկացա՝ նրա աչքերը միայն անքնությունից չէին ուռել, այլ նաև՝ արցունքներից: Եվ պատահական չէ, որ մեծ գիտնականը, կարդալով «Դիմակայություն» գիրքը, ընդգծել էր հենց այն տողերը, որտեղ պատմվում է, թե ինչպես է լացել երկրագնդի ամենաարիասիրտ մարդկանցից մեկը: Ահա այդ տողերը.

«Ուղղաթիռը Սպիտակում վայրէջք կատարեց փլատակներով շրջափակված փոքրիկ հրապարակում: Պարապուտը, ըստ երևույթին, մինչև դեկտեմբերի 7-ը սպորտային հրապարակի դեր է կատարել կողքի դպրոցի երեխաների համար: Փլատակներում մենք հարյուրից ավելի դպրոցական պայուսակներ հաշվեցինք: Պիոներական փողկապներ, տետրակներ: Անդրեյ Դմիտրիևիչը կռացավ և մի բարալիկ տետրակ բարձրացրեց: Դողացող ձեռքերով սկսեց թերթել. Թվաբանության տետր էր: Անհավասար ձեռագրով բառեր և թվեր են: Գնահատականը կարմիր թանաքով՝ «5»: Ակադեմիկոսը ակնոցը բարձրացրեց, թաշկինակով սրբեց աչքերը: Մեզ մոտեցավ երեսունին մոտ մի մարդ: Խոսքի բռնվեցինք, իմացանք՝ նրա տղեկը նույնպես զոհվել է այս դպրոցում: Համարյա բոլոր երեխաները զոհվեցին, ասաց նա: Հրավիրեց իր վրանը, որտեղ իր ընտանիքի կենդանի մնացած անդամներն էին ծվարել: Մենք գտնվում էինք կամուրջի այն կողմում, որտեղ բավական թվով սեփական տներ կան, շատերի երեխաները զոհվեցին դպրոցական և նախադպրոցական հիմնարկներում:

Մեր դիմացից գալիս էր մի ոչ բարձրահասակ մարդ: Մեր ուղեկցողն ասաց. «Այս մարդու երեք երեխաները և կինը զոհվել են: Նա հաճախ գնում-գալիս է այս ճանապարհով՝ իր քանդված տնից դեպի քանդված դպրոցը. Նույն ճամփով, որով գնում էին մեր երեխաները: Սախարովը նորից հանեց ակնոցը և սրբեց աչքերը»:

... Ամեն անգամ, երբ նա մոտենում էր միկրոֆոնին, երբեմն կանգնելով երկար հերթում, ես դիտում էի նրա՝ տարիքից շուտ կռացած կերպարանքը և մտածում՝ միշտ չէ, որ ճշմարիտ են անտիկ աշխարհի իմաստունները, պնդելով՝ «առողջ հոգին, առողջ մարմնում»: Նա նըման չէր դյուցազնի, որին զորեղ կաղնուն են նմանեցնում. ավելի շուտ՝ ասֆալտից դուրս պրծած մատղաշ շիվ, որը աչքիդ առաջ թոշնում է: Շատ թանկ արժե դիմակայությունը: Նա այնպես էր սիրում այս բառը:

Ակադեմիկոս Սախարովը տանջալիորեն երկար ճամփա անցավ ջերմամիջուկային սինթեզի գաղափարից մինչև մարդու իրավունքների իրականացման գաղափարը: Նա Սոկրատի պես հաճախ ասում էր, որ ինքը քիչ գիտե: Ավելի կանխատեսում է, գլխի է ընկնում: Սակայն նույնիսկ իր լեգենդար օժտվածությամբ, նախաձեռնող պատմախոսի իր տաղանդով նա չէր կարող իմանալ, որ գերագույն դամբանականում կլինի այն բառը, որն ինքն այնքան սիրում էր. դիմակայություն:

ՎԱՀԱՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ

# Մեծ, կանաչ գնդակ



Նկարը՝ ԿԱՐԵՆ ՄՈՒՇԱՏՅԱՆԻ

Մի օր հորաքրոջս տղայի հետ ամբողջ քաղաքը ոտքի տակ տվինք: Այն ժամանակ ես սովորում էի ութերորդ դասարանում, իսկ հորաքրոջս տղան՝ Դավիթը, հինգ տարեկան էր:

Նրա համար գնեցի մի մեծ, կանաչ գնդակ (նրան դա ամենից շատ դուր եկավ):

— Մեկ հատ էլ գնիր,— ասաց նա:

— Երկուսն ի՞նչ ես անելու:

Նա ասաց՝ պետք է: Ու հետո մի գլուխ նույնն էր կրկնում՝ պետք է, պետք է... Խանութից ոչ մի կերպ չէր ուզում դուրս գալ: Երբ համբերությունս հատավ, համարյա թե բղավելով ասացի. «Լսիր, մի գժվեցնի, ասա հասկանամ, եթե իրոք անհրաժեշտ է, կգնեմ»:

Նա երևի վախեցավ, որովհետև պատասխանեց ցածր ձայնով.

— Քեզ համար եմ ուզում, թե չէ էլի իմը կկորցնես ու դարձյալ գնդակ չեմ ունենա:

Բավական երկար նրան համոզում էի, որ ոչ մի դեպքում ես նրա գնդակին ձեռք չեմ տա: Վերջիվերջո խանութից դուրս եկանք:

Ամբողջ ճանապարհին Դավիթը ոչ մի րոպե լուռ չմնաց: Նրա հարցերին թիվ ու հաշիվ չկար: «Սա ի՞նչ մեքենա է», «Սա ի՞նչ ծառ է»... Նրա պահանջով ես կարդացի մեզ հանդիպող գրեթե բոլոր ցուցանակներն ու ազդագրերը: Հազիվ էի

հասցնում հարցերին պատասխանել: Այդպես մենք շրջում էինք քաղաքում: Արդեն մեր փողոցում էինք, նա մատով ցույց տվեց մի մեծ պլակատ ու սովորականի պես հարցրեց. ի՞նչ է գրած:

— Խաղաղություն աշխարհին,— ասացի:

Նա կրկնեց ասածս, հետո հարցրեց.

— Իսկ ի՞նչ է աշխարհը:

— Աշխարհը,— ասացի ես,— դա, ինչպես քեզ ասեմ, շենքերը, փողոցները, մարդիկ, ծառերը... այն ամենն, ինչ տեսնում ես՝ միասին վերցրած կլինի աշխարհ: Հասկացա՞ր:

Նա գլխով արեց: Հետո կանգնեց, հոգնել էր պայուսակը քարշ տալուց, հարցրեց.

— Իսկ մյուսն ի՞նչ է...

— Ո՞րը, խաղաղությո՞ւնը:

— Հհը, խաղաղությունը:

— Խաղաղությո՞ւնը: Դե, երբ պատերազմ չկա,— ասացի ես:— Արի նստենք, հոգնեցի:

Նստեցինք մոտիկ նստարանին:

— Գնդակը լա՞վն է,— հարցրի:

— Լավն է,— ասաց Դավիթը և պայուսակից գնդակը հանելով, սկսեց զննել: Հետո այն նորից պայուսակի մեջ դրեց ու հարցրեց.

— Պատերա զմն ի՞նչ է:

— Պատերա՞զմը,— դե, պատերազմ է, էլի,— նրա հարցերն ինձ արդեն ձանձրացրել էին, այդ օրը հազարից ավելի հարց էր տվել:

Նա իր մեծ, սև աչքերը սևեռել էր վրաս՝ սպասում էր պատասխանի, և ես շարունակեցի.

— Պատերազմն այն է, երբ կռվում են: Հասկանո՞ւմ ես: Պատերազմում մարդիկ զոհվում են,— նա շարունակում էր լուռ նայել ինձ:— Մարդիկ միմյանց սպանում են պատերազմում: Շատ ու շատ մարդիկ են մահանում պատերազմում:

— Ի՞նչ է լինում, երբ մահանում են, հը՞,— հարցրեց նա:

— Երբ մարդիկ մահանում են, նրանք այլևս չեն լինում, դադարում են գոյություն ունենալուց: Նրանց էլ ոչ ոք չի տեսնում: Նրանք ոչինչ չեն տեսնում: Հասկանո՞ւմ ես, Դավիթ, նրանք չեն կարող քայլել, չեն կարող խոսել, ոչինչ չեն կարող անել: Չկան:

Ես շոյեցի նրա սև գանգուրները:

— Ոնց որ իսկի չե՞ն եղել,— սովորականից ցածր ձայնով հարցրեց Դավիթը:

— Ոչ, եղել են,— զգալով, որ ինչ-որ բան սխալ ասացի, վրա բերի ես,— եղել են, որովհետև նրանցից այնուամենայնիվ մի բան մնում է:

— Իսկ ի՞նչ է մնում:

Մի որոշ ժամանակ մտածում էի՝ ինչպե՞ս նրան պատասխանել:

Նա նորից հարցրեց.

— Այդ ի՞նչ բան է մնում:

— Այ, օրինակ անունը: Անունը մնում է, չէ՞:

— Մարդը չկա, անունը առանց իրեն կա՞:

— Այո, Դավիթ: Քո պապիկի անունը Դավիթ էր: Նա զոհվել է պատերազմում ու մեզ է թողել իր անունը, և որպեսզի մենք այն հանկարծ չկորցնենք՝ տվել ենք քեզ: Հասկացա՞ր:

— Հասկացա,— շշնջաց նա:

Դավիթը երկար ժամանակ լուռ էր: Ես նույնպես լուռ էի՝ մտածում էի, որ այնքան էլ լավ չբացատրեցի նրան. կարելի էր ավելի լավ, ավելի ճիշտ բացատրել: Բավական երկար լուռ նստելուց հետո հարցրի.

— Դավիթ, ուզո՞ւմ ես պաղպաղակ ուտել:

Նա անձայն, գլխի կտրուկ շարժումով «ոչ» ասաց:

Նկատեցի, որ նրա փոքրիկ շրթունքները դողում են:

Հետո նա հանկարծ ասաց՝ վախենում եմ, ու ձեռքերն ամուր սեղմելով երեսին, սկսեց լաց լինել: Ես նրան ոչ մի կերպ չկարողացա հանգստացնել: Ստիպված գրկեցի ու մինչև տուն գրկած տարա: Ամբողջ ճանապարհին ուզում էի հանգստացնել, իսկ նա լալիս էր ու կրկնում.

— Վախենում եմ:

— Ախր, ինչի՞ց ես վախենում, Դավիթ,— հարցրի մի քանի անգամ:

— Եթե անունս կորցնեմ, նրանից էլ ոչինչ չի մնա,— լացակումած ասաց նա:

Ճանապարհին ես մի հարյուր անգամ կրկնեցի.

— Հիմարիկ, անունը հնարավոր չէ կորցնել, ախր ինչպե՞ս կարող ես կորցնել,— իսկ նա, միևնույն է, լալիս էր:

Տանը, երբ գրկիցս իջեցրի, Դավիթը փոքրիկ բռունցքներով սրբեց աչքերն ու պայուսակից հանեց մեծ, կանաչ գնդակը:



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Հարցազրույց

## ԵՐԵՎԱՆԻ № 10 ՄԻՋՆԱԿԱՐԳ ԴՊՐՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ՀԵՏ

Թ. Տ.— Մտածողության ստերեոտիպը, շաբլոնը հաճախ մեզ տևական խաբկանքի մեջ են պահում: Շատերի համար նման մի խաբկանք է դառնում ողջ կյանքը, շատերի համար էլ կենսագրության մի էջը, որ, սակայն, կարող է լինել ճակատագրական: Այսպես է հաճախ լինում առանձին մարդկանց կյանքում, այսպես լինում է նաև ժողովուրդների պատմության ընթացքում: Կենդանի օրինակը հենց մենք ենք՝ ԽՍՀՄ-ում ապրող ժողովուրդներս, որ այս երկրի ստեղծման սկզբում խաբված ենք եղել, թե կոմունիզմը յոթ սարի ետևում չէ, իսկ վերջում (այս բառըն ինքնաբերաբար ու բնական ծնվեց)՝ թե կոմունիզմից մեզ առայժմ սարեր ու ձորեր են բաժանում: Ինչևէ, մենք խաբկանքի մեջ շաղակրատում էինք, իսկ ուրիշները այդ կոմունիզմը կառուցում էին, միայն թե այն մի փոքր այլ կերպ կոչելով:

Խաբկանքի համար պարարտ հող է մի բանն անընդհատ կրկնելը, շաղակրատելը դրա մասին: Սուտը շատ կրկնելով, ասելով-ասելով հաճախ ճշմարտության կերպարանք է ստանում:

Երևի մի հազար անգամ հեռուստատեսությամբ և ռադիոյով լսած, մի այդքան անգամ էլ թերթերում կարդացած կլինեք՝ թե իբր եթե քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին, չէին լինի Ֆերգանայի, Թբիլիսիի, դեպքերը, չէին լինի խոջալուն ու բաքուն: Երևի մարդկային մտածողության բնույթն է՝ իրար նման երևույթների միջև պատճառահետևանքային կապ գտնել: Սակայն եթե դա բնական է երկու նմանատիպ երևույթի, ապա, չասենք անբնական, այլ անտրամաբանական է երևույթի և դրա գնահատման համար: Առաջին երևույթի գնահատումը չի կարող գործնականում ազդել երկրորդ երևույթի ի հայտ գալու վրա: Ես առաջ իրոք կարծում էի, որ եթե քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին, չէին լինի մյուսները: Բայց հանկարծ նկատեցի, որ այդպես եմ կարծում սոսկ այն պատճառով, որ նման կերպ են մտածում բոլորը, ամեն օր այդ են կրկնում բոլորը:

Իսկապես, ո՞վ է ասում, որ եթե սումգայիթին Մոսկվան քաղաքական գնահատական տար, չէին լինի Թբիլիսիի, Ֆերգանայի դեպքերը, բաքուն և խոջալուն: Սա ի՞նչ միամտություն է, մի՞թե կատարված եղեռնագործությունները մեզ թույլ են տալիս թեկուզև այդ աստիճան լավատես լինել: Մի՞թե

մենք այնքան մանկամիտ ենք, որ մտածենք, թե ադրբեջանցի ելուզակները աշակերտի պես վախենում են ուսուցիչ Մոսկվայի «երկու»-ներից:

Ընդհակառակը, քաղաքական գնահատականն այն է, ինչից, իմ կարծիքով, ամենաքիչն են վախենում մինչև ատամները զինված այսօրվա ելուզակները, իրենք գիտեին, ինչ են անում, եթե վախենային եղեռնի քաղաքական գնահատականից, չէին կազմակերպի: Ինձ ճիշտ հասկացեք, ես չեմ ասում, որ քաղաքական գնահատականը ոչինչ չարժե, դա շատ դեպքերում մեծ նշանակություն ունի, բայց որպես նմանատիպ եղեռնագործությունների գործնական կանխարգելիչ՝ կարծում եմ, որ չնչին, շատ չնչին նըշանակություն ունի:

Ուրեմն, ինձ թվում է, ես կարողացա հիմնավորել իմ ասածը, այն, որ մենք սխալվում ենք, երբ ասում ենք թե սումգայիթին քաղաքական գնահական տալով կկանխեին Թբիլիսիի Ֆերգանայի, Բաքվի դեպքերը ... Դուք ի՞նչ եք մտածում այս ամենի մասին:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ, 10-րդ դաս.— Եթե քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին, չէին լինի Ֆերգանայի, Թբիլիսիի դեպքերը, չէին լինի խոջալուն և բաքուն: Ո՞վ գիտի, գուցե լինեին, գուցե՝ ոչ: Ի՞նչ է նշանակում՝ եթե Մոսկվան քաղաքական գընահատական տար սումգայիթին: Ո՞վ և ո՞ւմ քաղաքական գնահատական տար: Ո՞վ է տեսել, որ գողության և այսպես ասած լըրբության կազմակերպիչն ինքն իրեն դատապարտի: Բացի այդ՝ ես չեմ հասկանում, ինչ է նշանակում նույն նժարին դնել Սումգայիթի և Թբիլիսիի դեպքերը: Եթե առաջինում մարդիկ իրենց տանը նստած սպանվեցին, խոշտանգվեցին և լլկվեցին միայն հայ լինելու պատճառով, ապա Թբիլիսիում... Դուք ինձանից լավ գիտեք ինչ պատճառով: Վերադառնանք քաղաքական գնահատականին: Կոնկրետ սումգայիթի համար քաղաքական գնահատական ասելով, ես հասկանում եմ արդարացի դատ: Այսինքն՝ ոչ թե այն դատը, որ եղավ երեք ինչ-որ ստորին կազմակերպիչների նկատմամբ, այլ այնպիսի դատ, որը մեղադրյալի աթոռին կնստեցներ վերևից ներքև բոլոր կազմակերպիչներին և մասնակիցներին: Եթե մենք կտրեինք այդ խժդժությունների հեղինակների ձեռքերը...

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԿԱՐԻՆԵ, 10-րդ դաս.— Խորհրդային հասարակությունում (քաղաքական կառուցվածքում) կատարվեց փոփոխություն: Տնտեսական կյանքում ամեն ինչ շարժվում է վատից դեպի ավելի վատը. հասարակությունը բարոյազրկվում է, հանցագործությունների թիվը մեծացել է, մարդիկ փախչում են աշխատանքից, բայց դրա փոխարեն մարտ ամսից մենք պիտի դասվեինք քաղաքակիրթ երկրների շարքը, շնորհիվ պրեզիդենտական կառավարման հաստատման:

Պրեզիդենտը ընտրված է, սակայն հարցերը չեն վերացել: Եվ ինչի՞ էր պետք այդ պաշտոնը և այն մեզ ի՞նչ կտա: Կարծում եմ, որ ոչինչ: Եվ ինչո՞ւ հենց այս ժամանակ նըրանց գլխում ծագեց «պրեզիդենտի» գաղափարը: Իմ կարծիքով՝ պրեզիդենտի պաշտոնը դրական դեր կկատարի այն ժամանակ, երբ քաղաքացիները ունենային վստահություն և համոզմունք իրենց սոցիալական և քաղաքական ապահովվածության նկատմամբ: Սակայն ցավալին այն է, որ խորհրդային մարդն այնքան է հիասթափված և վհատված, որ նրա համար պրեզիդենտ լինի թե չլինի՝ միևնույն է: Այժմ վերադառնամ այն բանին, թե եթե քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին, կլինեի՞ն արդյոք Ֆերգանայի, Թբիլիսիի դեպքերը, չէի՞ն լինի նաև խոջալուն և բաքուն:

Ուրեմն, այսպես. 20-րդ դարը, լուսավորյալ դարը, կրկին մթնեց: Մարդկությունը նորից վերապրեց իր բարբարոս ժամանակները: Սումգայիթը ժամանակին չստացավ իր արժանի գնահատականը: Այդ գնահատականը չի տրվել նաև այսօր: Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ սումգայիթին հաջորդեցին խոջալուն, կիրովաբադը: Վերջերս էլ Բաքուն: Բաքուն, որը դեռ այն ժամանակ և հիմա նույնպես չի ուզում տեսնել սումգայիթը, որ նույնն է՝ չի ուզում տեսնել իր այլանդակ դեմքը: Իսկ այդ դեմքը վանդալիզմի, ազգայնամոլության, ամբոխի դեմքն է:

Ինչ ասել է՝ եթե քաղաքական գնահատական տրվեր... Իսկ, ասենք, եթե այնուամենայնիվ քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին, կլինեի՞ն արդյոք այս մյուս դեպքերը: Գուցե լինեին, գուցե՝ ոչ: Եվ չեմ հասկանում, թե ինչու պետք է սումգայիթը համեմատել Ֆերգանայի և Թբիլիսիի դեպքերի հետ:

Եվ իմ կարծիքով՝ Մոսկվան սումգայիթին քաղաքական գնահատական չի տա, չէ՞ որ հենց ինքն է նրա հովանավորը: Եվ չեմ լսել, որ ինչ-որ հանցագործության, եղեռնագործության կամ անբարոյականության հովանավորը դատապարտի ինքն իրեն:

Թ. Տ.— Կարինե, կարծում եմ՝ սխալ չէ նաև մյուս ծայրից մոտենալ: Այսինքն՝ եթե Մոսկվան հրաժարվում է այդ քաղաքական

գնահատականը տալուց, այդպիսով մեզ ըստիպում է ենթադրել, որ այդ ամենն իր ձեռքի գործն է: Եթե նույնիսկ այդպես էլ չէ, ապա Մոսկվան ամենաքիչն անբարոյականություն է գործում, երբ բացահայտ եղեռնագործությունները ինչպես հարկն է չի պատժում: Իմիջիայլոց, մենք անընդհատ Մոսկվա ենք ասում, և կարծում եմ, որ բոլորս էլ կենտրոնական իշխանություններն ի նկատի ունենք և ոչ թե... Հասկանալի է:

Դո՞ւ ինչ կասես, Արման:

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ ԱՐՄԱՆ, 11-րդ դաս.— ԽՍՀՄ սահմանադրության մեջ ցեղասպանությունը կանխարգելող կամ ցեղասպանության դեմ որևէ հոդված չկա:

Սումգայիթը, խոջալուն, Ֆերգանան և Բաքուն, Թբիլիսիի դեպքերը Մոսկվայի կազմակերպված պրովոկացիաներն են, և շատ ծիծաղելի կլինի, որ Մոսկվան ինքն իրեն քաղաքական գնահատական տա:

Ռուսական կայսրության ստեղծման օրվանից, ռուս ցարականների գլխավոր նպատակը է եղել մեծացնել և պահպանել իրենց կայսրությունը: Նրանց դա հաջողվում էր, որովհետև նրանք գործում էին երկաթի և արյան օրենքով: Նկատենք նաև, որ առաջվա կայսրությունը տնտեսապես ավելի հզոր էր: Սակայն հիմա կայսրությունը թուլացել է և գտնվում է խոր ճգնաժամի մեջ: Այժմ նա կիրառում է հռոմեական հայտնի քաղաքականությունը՝ բաժանիր, որ տիրես:

Սա շատ պարզ բացատրություն ունի:

Մոսկվան թշնամության սերմ է ցգում իր տիրապետության տակ ընկած ազգերի մեջ: Նրա ցգած թշնամության սերմերը տալիս են իրենց պտուղները: Ազգերը թշնամանում են և իրար դեմ պայքարելով՝ թուլանում: Այսպիսով, հնարավորություն է տրվում Մոսկվային իր երերացող պետության կյանքը մի քիչ երկարացնելու:

Միջազգային դրությունը նույնպես նպաստավոր չէ կայսրության համար: Նրա շոշափուկները նկատելիորեն կարճացել են: Նա արդեն Եվրոպայի ժանդարմը չէ:

Գորբաչովը ցանկանում է երկիրը հասցնել զարգացած երկրների մակարդակին, պահպանելով կայսրությունը: Այս ճանապարհը և նախորդ սկզբունքը իրարամերժ են: Ինչպես ժողովուրդն է ասում՝ մի ձեռքով երկու ձմերուկ չես բռնի:

ԳԱԼՍՏՅԱՆ ՔՆԱՐԻԿ, 10-րդ դաս.—Ինչպե՞ս քաղաքական գնահատական տրվեր մի եղեռնագործության, որը հենց «վերևն» էր կազմակերպել: Էլ չեն կարող մեզ խաբել և դերասանություն անել: Իմ կարծիքով՝ քաղաքական գնահատականը ոչինչ էլ չէր փոխի: Գազանը միշտ գազան է մնում, միայն մեր Հոգին փոքր-ինչ թեթևացած կլիներ, եթե քաղաքական գնահատական տրվեր սումգայիթին: Բայց, միևնույն է, նույնիսկ եթե դրան քաղաքական գնահատական տրվեր, Ֆերգանան, խոջալուն, Բաքուն լինելու էին: Այո, նրանք ոչնչից չեն վախենում: Այնքան էլ հիմար չեն չհասկանալու համար, որ ժողովուրդ կոտորելուց հետո քաղաքական գնահատական պիտի տրվի, պիտի պատասխան տան:

Բայց պիտի պատասխան տան իրենց հովանավորողի՞ն: Դա երբեք չի լինի: Զնականորեն կարող է պատահել: Մե՛զ պետք է պատասխան տան, իսկ մերը պիտի լինի «ակըն ընդական, ատամն ընդ ատաման»: Մեր ժողովուրդը այս խոսքերը իզուր չի ասել: Դրանք հազարավոր տարիների բովում թրծված խոսքեր են: Եկեք, երբ մեզ հարվածում են, մենք էլ հարվածենք: Ուրեմն՝ «ակն ընդ ական, ատամն ընդ ատաման»:

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԼԵՈՆԻԿ, 11-րդ դաս.— Ես համամիտ եմ ձեզ հետ: Այդպիսի չմըտածված և անհեռատես հայտարարություններն կարող են վնաս պատճառել հետագայում ծավալվող հայ ազգային շարժմանը:

Շատ ծիծաղելի կթվա, որ մենք Մոսկվայից քաղաքական գնահատական պահանջենք, որովհետև այդ դեպքերի թելադրողը այդ նույն Մոսկվան է:

Հիշենք դարասկզբի հայ-թաթարական ընդհարումները: Մոսկվան իր նույն «ակտիվ» դերում էր: Ինչպես հիմա, որովհետև պատմական իրադարձությունները միշտ կրկնվում են: Ադրբեջանը Մոսկվայի ձեռքին մահակ է, բայց կարծում եք, սիրո՞ւմ է Մոսկվան իր մահակը: Ոչ, նրան այդ մահակը պետք է միայն իր խեղճությունն ու անզորությունը վերստին ապացուցելու պահերին, որովհետև գաղափարի դեմ բռնություն գործադրելը թուլությանը բնորոշ քաղաքականություն է, իսկ հարկ չեղած դեպքում մահակ-Ադրբեջանը կարող է դեն գցվել՝ որպես պահեստային բռնություն:

Թ. Տ.— Համաձայն եմ, Լեոնիկ: Բայց չմոռանանք, որ միշտ էլ նախ երկու մահակներն են կռվել և ոչ թե մեկի ձեռքն ու մյուսի մահակը: Ասելս այն է, որ մենք ինքներս էլ պետք է աշխատենք մահակ չդառնալ:

Մի քիչ ուզում եմ դժգոհել, որովհետև դուք հարցիս միայն մի կողմին եք անդրադառնում: Այնինչ, ես ուզում էի, որ դուք կեղծ տրամաբանական հետևություններ հայտնաբերեիք, որոնցով հեղեղված են կենտրոնա-

կան ու հանրապետական (նաև մեր հանրապետության) լրատվական օրգանները: Հույսս ձեզ պատանեկան զգացողությունն էր, որ, ինձ թվում է, պետք է ավելի զգոն լինեիր մրտ- քի կեղծ տրամաբանական շղթաների ընկատմամբ: Իսկ դրանք կան, ընդունված են ընդհանուրի կողմից և դեռ աստված գիտե, թե որքան են շարունակելու վնասել մեր ժողովրդի արթնացող քաղաքական միտքը: Այնուամենայնիվ, եթե ոչ հիմա, ապա հետագայում կուզենայի, որ իմ առաջին հարցի վրա դարձյալ խորհեիք: Իսկ այժմ, ընկատի ունենալով, որ դրա համար ձեզնից ժամանակ կպահանջվի, ուզում եմ անցնել երկրորդ հարցին:

Երբ ի հայտ են եկել ոչ ընդունված, բոլորին պարտադրված ձևով չմտածող անհատներ, ԽՍՀՄ-ում նրանց տարիներ շարունակ աքսորել են, երկրից քշել: Խնդիրը, որին ուզում եմ ձեր օգնությամբ անդրադառնալ, սեփական հայրենիքից մարդուն արտաքսելն է:

Առաջին՝ ո՞ւմ է իրավունք տրվում, պետական ո՞ր մարմինը կամ ընդհանրապես ո՞վ կարող է դա անել: Եվ երկրորդ. ո՞ր հանգանքի դեպքում:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— Իմ կարծիքով հայրենիքից, սեփական օրրանից մարդուն վտարելը ամենաքիչը անբարոյականություն է: Հատկապես այնպիսի մարդուն, որը շուրջ երկու տասնամյակ առաջամարտիկների դըրոշակակիր դարձած մշտապես տանջանքի է ենթարկվել խորհրդային բոլորիս հայտնի կարմիր մսաղացի սոսկալի մեքենաներում, տաժանակիր աքսորներում: Ես նկատի ունեմ Պարույր Հայրիկյանին: Այսօր, երբ մեզ հաջողվել է դուրս գալ բոլշևիկյան ստրկամտությունից, պարտական ենք նաև նրանց՝ Պարույր Հայրիկյանին, Հայկազ Խաչատրըյանին, Աշոտ Նահապետյանին, ճահատակներ Ստեփան Զատիկյանին, Իշխանին, Երախի կռվում ընկած Մովսես Գորգիսյանին և այլոց:

Ո՞վ և ի՞նչ իրավունք ուներ վտարելու Պարույր Հայրիկյանին: Որտե՞ղ էինք մենք, ինչո՞ւ թույլ տվեցինք:

Իմ կարծիքով՝ ոչ ոք, ոչ մի պաշտոնյա իրավունք չունի մարդուն, հատկապես Հայրիկյանի պես մարդուն, վտարել, արտաքսել հայրենիքից: Այդ իրավունքը տրված է միայն ժողովրդին:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՍԻՐԱՆՈՒՇ.— Ես կարծում եմ, որ ոչ ոք, ոչ մի պետական մարմին, իրավունք չունի մարդուն արտաքսել իր հայրենիքից, ինչ հանցանք էլ որ նա գործած լինի, չէ՞ որ մենք ունենք պատժի ուրիշ ձևեր:

ԱՐՁՈՒՄԱՆՅԱՆ ԱՐՄԱՆ.— Մարդուն գաղափարի համար արտաքսում են միայն մեր երկրում, և դա իրականացնում է Գերագույն խորհուրդը: Սա արդեն իրավական նորմերի խախտում է իրավական պետությունում: Բայց քանի որ մերը իրավական պետություն չէ, ապա մեզ մոտ դա սովորական պրոցես է:

Թ. Տ.— Զգացվում է, որ բոլորդ էլ նույն կարծիքին եք, բայց սա այն դեպքն է, որ, կարծում եմ, կարելի է և պետք է փոքրինչ ավելի մանրամասն խոսել:

Այստեղ դեմ-դիմաց կանգնած են երկու համակցություններ՝ հայրենիք և մարդ, և որևէ երրորդ իրողություն տվյալ դեպքում որևէ իրավունք չունի այս հարաբերության մեջ: Ուրեմն՝ մարդուն հայրենիքից արտաքսելու հիմք կարող է դառնալ, ճիշտ է, միայն հայրենիքին կոնկրետ կերպով, գործնականում դավաճանելու փաստը: Ոչ մի այլ դեպքում չի կարելի մարդուն հեռացնել իր հայրենիքից: Դա եղեռնագործություն է, և ով որ նման բան է անում, եղեռնագործ է: Խորհրդային իշխանության տարիներին քիչ չեն եղել հայրենիքից արտաքսված քաղաքացիները: Մինչև այսօր էլ կան այդպիսի մարդիկ: Խորհրդային իշխանությունը հայրենիք չէ, ավելի ճիշտ՝ այն շատ հեռու է հայրենիք կոչվելուց: Ասեմ նաև, թե ըստ իս ում է իրավունք տրվում մարդուն արտաքսել իր հայրենիքից: Առաջին հերթին՝ ես էլ եմ կարծում, որ ոչ մի պետական մարմնի, ոչ որևէ գերագույն, ոչ որևէ մինիստրների խորհրդի, ոչ առավել ևս որևէ կուսակցական կազմակերպության կենտրոնական կոմիտեի՝ լինի կոմունիստական, սոցիալ-դեմոկրատական, թե դաշնակցական ու ռամկավարական: Ասում եմ՝ առավել ևս, որովհետև այսպես թե այնպես, գերագույն խորհուրդները ժողովրդի կողմից ընտրված մարմիններ են, իսկ կուսկենտկոմները ժողովրդի մի մասը, այն էլ՝ փոքր մասը կազմող կուսակցականների ընտրած մարմինները: Իր հայրենիքից մարդուն արտաքսելու իրավունք ունի միայն այդ հայրենիքի տերը: Ո՞վ է, ուրեմն, հայրենիքի տերը: Կարծում եմ, և դուք էլ համաձայն կլինեք, որ ամենևին էլ ոչ որևէ պետական կամ կուսակցական կառուցվածք, քանի որ դրանք անցողիկ երևույթներ են: Մարդուն սեփական հայրենիքից կարող է արտաքսել միայն այդ հայրենիքի օրինական ու հավերժական տերը՝ ժողովուրդը: Դուք կարող եք պնդել, թե գերագույն խորհուրդն էլ ժողո-

վըրդի ընտրյալների խորհուրդն է, հետևաբար՝ կարելի է այդ բանը թույլ տալ ժող. դեպուտատների գերագույն խորհուրդներին: Ոչ, հազար անգամ ոչ: Որովհետև դեպուտատն այլ կարծիք կարող է ունենալ, իսկ իր ընտրողները՝ այլ: Ուրեմն, կարծում եմ, որևէ մարդու իր հայրենիքից արտաքսել կարող է միայն ժողովուրդը, որն իր տեսակետը այդ դեպքում պետք է արտահայտի հանրաքվեի միջոցով: Դե լավ, այժմ մեկ այլ հարց:

Խոսեցինք մեր ծաղկում ապրող քաղաքական մտքի մասին: Դրա հետ առնչվող մի հարց. հայերիս առաջ ծառացած քաղաքական ամենահրատապ խնդրի՝ արցախյան հարցի լուծման ընթացքը շատ հեղինակավոր գործիչներ տարբեր կերպ են պատկերացնում. ոմանք կարծում են, որ արցախի հարցը պետք է առաջ տանել որպես Հայկական հարցի մի մասը, ոմանք էլ կարծում են, որ այն պետք է ներկայացվի որպես Արցախի ժողովրդի ինքնորոշման իրավունք: Ըստ ձեզ՝ ո՞րն է այս երկու տեսակետներից ճիշտը: Պատճառաբանեք, թե ինչու: Կարծում եմ՝ հարցին պետք է նայել ոչ միայն այսօրվա տեսանկյունից, այլ նաև ապագայի և անցյալի:

ԳԱԼՍՏՅԱՆ ՔՆԱՐԻԿ.— Արցախյան հարցը պետք է լուծվի որպես Հայկական հարցի մի փոքրիկ մաս:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՍԻՐԱՆՈՒՅՇ.— Իմ կարծիքով՝ ճիշտ է երկրորդ տեսակետը, որ Արցախի հարցը պետք է առաջ տանել որպես Հայկական հարցի մի մասը: Այն ներկայացնելով որպես Արցախի ժողովրդի ինքնորոշման իրավունք, մենք ոչնչի չենք հասնի: 70 տարի ոտնահարվել է ժողովուրդների ինքնորոշման իրավունքը և այսօր էլ ոտնահարվում է: Մեր պետությունը երբեք չի եղել իրավական և շարունակում է մնալ այդպիսին: Մեզ մոտ հնարավոր չէ առաջին ուղիով հաջողության հասնել:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— Այսօր բազմաթիվ հայ երեսփոխաններ (հատկապես կոմունիստներ) անգամ Հայաստանում, բարձրից հայտարարում են. «Մենք հողային պահանջ չունենք»: Հարգելի տիկիններ և պարոններ, չէ՞ որ այդ նույն միտքը առանց որևէ փոփոխության շարադրված է 1921 թ. մարտի 16-ի ռուս-թուրքական խայտառակ պայմանագրում: Չէ՞ որ այդ դեպքում մենք պիտի հրաժարվենք մեր պատմական հողերից՝ Նախիջևանից, Կարսից, Կարինից, Վասպուրականից, Տարոնից, Կիլիկիայից, Արցախից, այո, նաև Արցախից: Ոչ ոք չի ժխտում արցախահայության ինքնորոշման փաստը: Բայց արտասահմանի հայությունը ինքնորոշման անվան տակ չի կարող հարց բարձրացնել Հայաստանին միանալու կամ լավագույն դեպքում անկախ հանրապետություն հռչակվելու պահանջով: Արցախի հարցը լինելով Հայկական հարցի մի մասը, նաև ինքնորոշման պահանջ է: **Ինքնորոշում, պատմական վայրում:** Իմ կարծիքով՝ մեկը մյուսին չի հակասում:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԿԱՐԻՆԵ.— Արցախի հարցը Հայկական հարցի մի մասն է և, իհարկե, Արցախի ժողովրդի ինքնորոշման իրավունքի արտահայտությունը: Իմ կարծիքով՝ երկուսն էլ սխալ չեն:

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԼԵՈՆԻԿ.— Իմ կարծիքով՝ երկու տեսակետներն էլ ճիշտ են, քանի որ Արցախը Հայաստանի մի մասն է և մեզ հայտնի պատճառներով կտրցրել են այն: Բնականաբար՝ այն դառնում է Հայկական հարցի մի մասը: Իսկ այնտեղի ժողովուրդը ունի ազատ ինքնորոշման իրավունք: Միջազգային ասպարեզում այս հարցը պետք է ներկայացվի որպես Հայկական հարցի մի մաս, որովհետև աշխարհին հայտնի է Հայկական հարցը:

Թ. Տ.— Արդեն երկուսուկես տարի է, սիրելի երեխաներ, որ քաղաքական ասպարեզի վրա է արցախյան հարցը, և հնարավոր չէ մեր հանրապետությունում, իսկ այժմ արդեն աստիճանաբար պարզ է դարձել, որ նաև ողջ Խորհրդային Միությունում, որևէ այլ կարգի հարց հիմնավորապես լուծելու համար ռեալ հեռանկարներ տեսնել, քանի դեռ այս երկրում չեն լուծված ազգային հարցերը: Ինչո՞ւ, որովհետև Միությունը բազմազգ երկիր է և, պատկերավոր խոսքով ասած, եթե մարմնի բոլոր անդամների (հանրապետությունները, ազգերը) գործունեությունը չի ներդաշնակված, մարմինը նման է կաթվածահար մարդու, իսկ կաթվածահար է լինում ուղեղը, այսինքն՝ կառավարման կենտրոնը: Ընկեր Գորբաչովը բազմիցս նշել է ուժեղ կենտրոնի գաղափարը, բայց, կարծում եմ, Մոսկվան հիմա թույլ մի կենտրոն է, կաթվածահար, քանի որ չի կարողանում ներդաշնակել ֆեդերացիայի անդամ հանրապետությունների հարաբերությունները: Եվ Միխայիլ Սերգեևիչի այն հայտարարությունը, թե արցախյան հարցում չեն լինելու ոչ հաղթողներ և ոչ էլ պարտվողներ, յուրօրինակ մի խոստովանություն է կենտրոնի թուլության, անզորության մասին: Բնության և հասարակության օրենքները հաղթողների և պարտվողների օրենքներ են, բայց եթե մեզ

70 տարի հավատացել են, որ Խորհրդային Միությունը բարոյական բարձր սկզբունքների վրա հիմնված երկիր է, ուրեմն՝ հաղթողի և պարտվողի հարաբերությունը մենք պետք է հասկանանք ոչ թե ուժերի և թույլի հարաբերություն, երբ ուժեղի մոտ միշտ էլ թույլն է մեղավոր, այլ արդարի և անարդարի, բարոյականի և անբարոյականի, երբ հաղթողը միշտ արդարն ու բարոյականն է լինելու: Ուրեմն՝ դուք ինչպե՞ս եք հասկանում գլխավոր քարտուղարի և Գերագույն խորհրդի նախագահության նախկին նախագահի և այսօրվա պրեզիդենտի հիշյալ խոսքը՝

ԳԱԼՍՏՅԱՆ ՔՆԱՐԻԿ.— Այո, երկար տարիներ ժողովուրդը խաբված է եղել, բայց շատ-շատերին, որոնց խաբել հնարավոր չի եղել, սպանել են: Տեսնում էին, նյարդայնանում, բայց հավատում էին, որ կփոխվի, միշտ այդպես մնալ չի կարող: Արցախյան շարժումը մեզ՝ հայերիս, քաղաքականապես այնքան հասունացրեց, որ նույնիսկ փոքրիկ երեխան է հասկանում, որ Խորհրդային Միությունը 70 տարի խաբել է ժողովրդին: Գաղափարի տակ ձևականություն են պաշտում, լոզունգներ, պլաններ, թղթեր ու թղթեր: Ահա Խորհրդային Միությունը: Այս երկրում սոցիալիզմ չի եղել, և 21-րդ դարում արդեն ուզում են կոմունիզմ կառուցել: Դրանք հեքիաթներ, երազներ են, որոնցով սնվում են մեր կոմունիստ կուսակցականները:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— Ծիշտն ասած՝ ես Մոսկվայից, մասնավորապես «պարոն» Կրեմլից սպասելիք և պահանջ չունեմ: Իմ միակ պահանջն է «Մոսկվա, հեռացիր Հայաստանից և Արցախից»: Պարզաբանեմ միտքս: Կամոյի, Ազատի, Գետաշենի և Երասխի հունվարյան դեպքերը ցույց տվեցին, որ հայն այնքան էլ անզոր ու աննահանջ չէ և արժանի հակահարված կտա իր իրավունքները անտեսող հարևանի ոտնձգություններին: Ուրեմն՝ Մոսկվան չէ, որ պիտի որոշի հաղթողին ու պարտվողին: Այդ մենք՝ երկու պետություններս պիտի որոշենք: Իսկ այժմ դառնամ Ձեր հարցին: Գորբաչովի հայտարարությունը բացարձակ կեղծիք է: Ոչ թե այն բանի համար, որ Մոսկվան սիրահարվել է Բաքվին (ինչպես շատերն են կարծում), այլ՝ որ կայսրության շահերն են այդպես պահանջում: Յուրաքանչյուր անձնավորության, թեկուզ կայսրության ղեկավարի համար ամենաբարձր սկզբունքը պիտի լինի արդարությունն ու արդար պայքարի հետ հաշվի նստելը:

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԼԵՌՆԻԿ.— Գորբաչովի հայտարարությունն, իրոք, խոստովանություն է կենտրոնի անզորության մասին: Կենտրոնը վարում է հռոմեական հայտնի «բաժանիր, որ տիրես», քաղաքականությունը: Կայսրությանը ձեռնտու չէ Արցախի հարցի արդարացի լուծումը, քանի որ դա չի համապատասխանում իր շահերին: Հայ ժողովրդի նպատակները երբեք չեն համապատասխանել կայսրության շահադիտական նպատակներին:

Թ. Տ.— Այսինքն՝ պարզ է, որ մենք հույսներս մեզ վրա պիտի դնենք: Ուստի՝ ևս մեկ հարց. ինչպե՞ս պետք է լուծվի արցախյան հարցը, եթե Մոսկվան, ձանձրանալով այդ պրոբլեմից, ազատություն տա Հայաստանին և Ադրբեջանին իրար հետ կարգավորել կոնֆլիկտը: Իսկ նման միտումներ ընկատվում են 1989 թ. նոյեմբերի 28-ի և 1990 թվականի մարտյան որոշումների մեջ: Դրան գումարած այն, որ հակամարտության երկու կողմերում էլ կան այսպիսի կարծիքներ. օրինակ ՀՀՇ-ի վարչության անդամ Վազգեն Մանուկյանը ասում է, «որ հողային հարցը լուծել կարողանալու համար նախ անհրաժեշտ է ունենալ անկախ պետություն...», իսկ ադրբեջանական «Նոր մուսավաթ» կուսակցության ղեկավար Նիյազի Իբրահիմովը պնդում է, որ «առանց Մոսկվայի մասնակցության մեզ համար ավելի հեշտ կլիներ կարգավորել մեր փոխհարաբերությունները»: Ինչպես տեսնում եք, երկուսն էլ այն կարծիքին են, որ արցախյան հարցը ավելի հեշտ է կարգավորել առանց երրորդ կողմի, այսինքն՝ տվյալ դեպքում Մոսկվայի միջնորդության: Պատկերացնենք, որ կա անկախ Հայաստան և կա անկախ Ադրբեջան: Ինչպե՞ս կլուծվի արցախյան հարցն այս դեպքում: Առճակատո՞ւմ կլինի: Ի՞նչ եք մտածում այդ ապագա իրավիճակի մասին: Իհարկե, ամեն կերպ պետք է աշխատել, որ հարցը լուծվի առանց արյունահեղության: Բայց ինչպե՞ս...

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— 1920 թ.-ին Արցախի ազգային խորհուրդը ժողովրդի պահանջով ընդդիմացավ Ադրբեջանի այն պահանջին, որի դեպքում Արցախը պատրաստվում էր ընդունելու վերջինիս գերիշխանությունը: Ադրբեջանը փորձեց այդ անել զենքի ուժով, բայց ապարդյուն, որովհետև Հայաստանի հանրապետությունից ինքնորոշված արցախահայությանը օգնության հասան հայկական զինվորական ուժերը տաղանդավոր զորավար Դրոյի և Նժդեհի ղեկավարությամբ: Արցախը միացվեց Հայկական Հանրապետությանը...

(Շարունակությունը՝ 30-րդ էջում)



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Գյումրի

Կործանված Գյումրի՝
Ծիծաղի աշխարհ,
Ժպտում էիր միշտ
Զվարթ բարբառով,
Հիմա լալիս ես
Այրված աչքերով:
Բայց գիտեմ՝ նորից
Կկանգնես ոտքի,
Կժպտաս նորից
Անուշ երգերով:

ԱՆԺԵԼԱ ԲԱԲԼՈՅԱՆ
Երևան, № 181 դպրոց, 4-րդ դաս.

## Մասիսը

Արարատ լեռը իր մորն է ուզում,
Չի ուզում մնա թուրքերին գերի,
Ուրիշի գրկում չի ուրախանում,
Կարոտել է նա հայոց աշխարհին:

Նա ոտքեր ունի, սակայն կապկպած,
Չի կարողանում գալ մի քայլ առաջ,
Բայց սերունդները հայոց առնական
Կքանդեն կապերն այդ հսկայական:

Ու այնժամ երբ ինձ այսպիսի հարց տան,
Թե ո՞րն է բարձր սարը հայկական,
Կպատասխանեմ՝ մեր Մասիս հսկան,
Նա է մեր Հայոց աշխարհի արքան:

ԱՐՄԵՆ ՔԵՓԻԴՅԱՆ
Ք. Էջմիածին, Խ. Աբովյանի անվան դպրոց,
7-րդ դաս.

## Հավատի փունջ՝ մայր սրբազան

Մայր եմ ասում,
Սակայն աչքիս երևում է
Գետում հոսող ջուրը զուլալ՝
Կոհակվելու իր պարզությամբ:
Մայր եմ ասում,
Ու թվում է՝
Երկնից եկող ճաճանչներն են
Փարում-սահում իմ լանջն ի վար՝
Գերելով ինձ ու տանելով մի այլ աշխարհ,
Որտեղ հավատն իմ գտնում է
Մեկնությունը Մայր սուրբ բառի...
Ահա, կրկին մայր եմ ասում,
Եվ իմ հոգուն պատկերվում է մի այլ
եզերք
Այնքան ուրիշ, անրջային.—
Տուն եմ տեսնում՝ խրճիթ մի պարզ.
Ու իմ առջև՝
Աղուհացը հանապազօր...

ԿԱՐԻՆԵ ԱՂԱԳՈՒՄՅԱՆ
Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 10-րդ
դասարան

ՍԱՄՎԵԼ ՍԻՄՈՆՅԱՆ, 10 տ.
Լենինական



●●

նչքան որ գույն կա աշխարհում՝
ոգուս մեջ կա այնքան կարոտ,
Այնքան աստղ է վառվում, մարում
Փոքրիկ ու մեծ իմ սրտին մոտ:

Ինչքան ծաղկունք կա աշխարհում
Իմ հոգու մեջ՝ այնքան կարոտ,
Այնքան երգ է ծնվում, մեռնում
Երազիս հետ աստեղամոտ:

Ու այդ բոլոր գույների մեջ,
Ծաղկունքի մեջ ու աստղերի
Քեզ է փնտրում հոգիս անվերջ,
Կարոտի գույն իմ հայրենի:

Ինչքան գույն կա այս աշխարհում,
Ինչքան աստղիկ, ծաղիկ ու վարդ,
Այնքան կարոտ կա իմ հոգում,
Ու երգեր կան դեռ անավարտ:

ՌԻՏԱ ԱՎԱՆԵՍՅԱՆ
Ղափան, № 6 միջն դպրոց, 8-րդ դաս.



ՔՐԻՍՏԻՆԵ ՍԻՄՈՆՅԱՆ, 12 տ.
Լենինական









ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՀԻՍՈՒՆԵՐՈՐԴ

# Հայոց պետականության անկումը

Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի ամբողջ գործունեությունը հովանավորում ու խրախուսում էր Վռամշապուհ թագավորը: Ճիշտ է, նա չուներ նախորդ Արշակունիների մեծ իշխանությունը Հայքում, ենթակա էր պարսից արքունիքին, բայց և այնպես հայոց պատմության մեջ ամենամեծագործ թագավորներից մեկն էր:

414 թվականին Վռամշապուհը մահացավ: Նրա որդին՝ Արտաշեսը անչափահաս էր: Սահակ Պարթևը խնդրեց Պարսկաստանի այդ ժամանակվա թագավոր Հազկերտին բանտից ազատել և կրկին հայոց թագավոր ճանաչել Խոսրով III-ին: Հազկերտը հարգեց այդ խնդրանքը:

Խոսրովը եկավ Հայաստան, բայց արդեն ծեր էր ու հիվանդ: Նա հազիվ ութ ամիս թագավորեց և մահացավ 415 թվականին:

Այդ ժամանակ պարսից արքունիքը տեսնելով, որ հայերը գիր ու գրականություն են ստեղծել, Հայաստանում լուսավորական մեծ շարժում է ծավալվել և հայոց եկեղեցին հայացել է ու ամրացել, որոշեց այլևս Արշակունի հայ թագավոր չհաստատել Հայքում: 416 թ., իբրև հայոց թագավոր, Հազկերտը Հայաստան ուղարկեց իր որդի Սասանյան Շապուհին, որ կոչվեց Շապուհ Պարսիկ: Ինչպես Խորենացին է գրում, նա «անարգաբար թագավորեց» Հայքում: Շուտով՝ 419 թ. այս Շապուհը սպանվեց: Նախքան այդ Հայաստանում սկսվել էր ապստամբական շարժում: Հայ նախարարներն ու ժողովուրդը ծայր աստիճան դժգոհ էին Պարսկաստանի լկտի վերաբերմունքից հայերի նկատմամբ, Սասանյան Շապուհին հայոց թագավոր հռչակելու առթիվ:

419 թվականից այդ շարժումը բորբոքվեց ու մեծ չափերի հասավ Ներսեհ Ճիճրակեցի նախարարի գլխավորությամբ: Հայկական զորքերը մի քանի հաղթանակ տարան պարսիկների նկատմամբ:

Այդ ժամանակ Պարսկաստանում սկըսվել էր հակաքրիստոնեական շարժում: Պարսիկ քրիստոնյաները Պարսկաստանի Հորմիզդ-Արտաշիր քաղաքում մի ատրուշան քանդեցին: Դա արթնացրեց զրադաշտականների զայրույթը: Պարսից թագավորը հալածանք սկսեց քրիստոնյաների նկատմամբ: Պարսկաստանի քրիստոնյաները փախչում էին Հայք և Բյուզանդիա: Այդ հալածանքի մի արտահայտությունն էլ պարսից արքունիքի ակնհայտորեն հայավնաս քաղաքականությունն էր:

421 թվականին Հայկական Միջագետքին տիրելու կապակցությամբ և քրիստոնյաների նկատմամբ Պարսկաստանում մոլեգնող հալածանքների առիթով սկըսվեց բյուզանդա-պարսկական պատերազմ: Պարսկական զորքերը պարտվեցին: 422-ին Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև հաշտության պայմանագիր կնքվեց: Պարսից Վռամ V արքայից արքան, որ ամենից ավելի դաժանորեն էր հալածում քրիստոնյաներին, խոստացավ դադարեցնել այդ հալածանքը:

Սահակ Պարթևի միջնորդությամբ պարսից արքունիքը համաձայնեց Վռամշապուհի 18-ամյա որդուն՝ Արտաշեսին հայոց թագավոր հաստատել: Արտաշեսին պարսից Վռամ թագավորը պարսկական ձևով անվանեց Արտաշիր և հայոց թագավոր հաստատեց 422 թվականին:

Վռամ V արքայից արքան նաև իր դեմ ապստամբած հայ նախարարներին ներելու թուղթ հրատարակեց:

Սակայն Արտաշես թագավորը չարդարացրեց Սահակ կաթողիկոսի հույսերը. նա ավելի շատ հրապուրվում էր շըռայլ կյանքով, զվարճություններով, քան հայոց պետական գործերով:

Դրանից օգտվեց պարսից արքունիքը, որ շարունակում էր հայ նախարարներին խոստումներ տալ նրանց իրավունքները մեծացնելու վերաբերյալ, եթե նրանք տապալեն իրենց Արշակունի թագավորին:

Նախարարների մի մասը դարձյալ առաջնորդվելով եսամոլական ձգտումներով, դավ պատրաստեց հայոց Արշակունի թագավորի դեմ:

Սահակ Պարթևն այս նենգ խաղի մեջ իր վեհ բարձրության վրա մնաց: Նա, ինչպես և ժամանակին իր հայրը՝ Ներսես Մեծը, չէր նույնացնում տվյալ պահի հայոց թագավորին Արշակունիների հայկական պետության հետ և մտածում էր՝ այս թագավորը որքան էլ վատը լինի, պետք է պաշտպանել նրան, քանի որ Արշակունի է և քանի որ Արտաշեսին գահընկեց անելով՝ կարող է վերանալ հայոց առանց այն էլ թուլացած պետականությունը:

Դժգոհ ու դավադիր նախարարները իրենց եսամոլական կարճատեսությամբ չէին հասկանում, որ Պարսկաստանի ձեռքին խաղալիք են դարձել հայոց պետականության թուլացած ճրագը բոլորովին մարելու գործում:

Մովսես Խորենացին պատմում է, թե ինչպես Արտաշես-Արտաշիրից դժգոհ նախարարները գալիս են կաթողիկոսի մոտ. «Նրանք եկան Մեծն Սահակի մոտ բողոք բարձրացրին և նրան էլ հրավիրեցին իրենց օգնելու, որպեսզի Արտաշիրի վրա չարախոսեն պարսից թագավորի առաջ, իրենց թագավորին դեն գցեն և պարսիկ բերեն աշխարհին կառավարող: Իսկ Մեծն Սահակն ասաց. «Ձեզ սուտ չեմ համարում, ինքս էլ լսել եմ նրա ցավալի, ամոթալի արարմունքները, շատ անգամ հանդիմանել եմ, բայց նա ուրացել է: Արդ՝ պետք է մի կարճ ժամանակ տանել այդ մարդու թերությունները, մինչև մտածենք մի ելք գտնենք»:

Նախարարները շարունակում են համոզել Սահակ Պարթևին, որ նա իրենց համախոհը դառնա, և միաբանաբար խնդրեն Պարսկաստանից տապալել հայոց թագավորին ու Հայաստանում նշանակել պարսիկ կառավարիչ: Ինչպես Խորենացին է գրում, Սահակ Պարթևը նրանց պատասխանել է. «Քավ լիցի, որ ես իմ մոլորված ոչխարը մատնեմ գայլերին, որ ես չպատեմ բեկվածին կամ հիվանդացածին, այլ գահավեժ անեմ... Եվ ինչպե՞ս կարելի է այդ իմ ախտավոր ոչխարը փոխել առողջ


Մովսես Խորենացի

գազանի հետ, որի հենց առողջությունը մեզ համար պատուհաս է»:

Բայց դավադիր նախարարները չլսեցին Սահակ Պարթևի իմաստուն խոսքերը: Նրանք չհասկացան, թե ինչ ասել է սեփական ազգային պետության տապալում, չհասկացան նաև, որ հայ կենտրոնական պետականության բացակայությունը տանելու է դեպի հայ նախարարական տների վերացում: Սեփական պետությանը դաված նախարարները գնացին Տիզբոն, պարսից Վռամ V թագավորի մոտ ու պահանջեցին Արտաշես Արշակունուն գահընկեց անել: Պարսիկներն էլ հենց դա էին ուզում: Վռամը Արտաշես թագավորին և Սահակ կաթողիկոսին կանչում է Տիզբոն, հայոց թագավորին գահընկեց անում, Սահակին զրկում կաթողիկոսությունից, երկուսին էլ բանտարկում:

Դա 428 թվականն էր՝ հայ ժողովրդի պատմության մեջ ամենասև թվականը: Հայության տնանքանդության տարին:

Ավարտվեց Արշակունիների հայոց թագավորությունը, որ տևել էր մոտ 300 տարի: Հայկական կենտրոնական պետությունը վերացավ: Եվ մեկ էլ 457 տարի հետո Հայաստանում վերականգնվեց այդպիսի պետականություն, այս անգամ Բագրատունիների նախարարական տան կողմից:

Պարսից թագավորը Հայաստան էր ուղարկել պարսիկ կառավարիչ՝ մարզպան,



Տեկորի տաճարը 5-րդ դար

իսկ կաթողիկոս էր նշանակում իր մարդկանց: Դրանցից էր աsորի Բրքիշո եպիսկոպոսը: Պարսկաստանն ուզում էր իրականացնել իր ծրագիրը՝ Հայաստանի թե աշխարհիկ, թե հոգևոր ղեկավարներ նշանակելով իր մարդկանց, հայերին լրիվ ենթարկել իրեն, ստրկացնել ամեն կողմից:

Հայերը դժգոհում էին, և նախարարների մի մասը պարսից թագավորից խնդրեց մի նոր կաթողիկոս նշանակել, նախարարների մյուս մասն էլ պահանջում էր Սահակ Պարթևին վերականգնել հայոց կաթողիկոսի պաշտոնում: Պարսից թագավորը երկու կաթողիկոս է նշանակում՝ ասորի Շմուելին, որպես Վաղարշապատում նստող գլխավոր կաթողիկոս և Սահակ Պարթևին, որպես զուտ կրոնական առաջնորդ՝ հոգևորականներ ձեռնադրելու, եկեղեցական եկամուտներին տնօրինելու իրավունքով: Սահակ Պարթևից պահանջեցին նաև պաշտպանել Հայաստանի պարսիկ մարզպան Վեհմիհրշապուհին:

Հայրենիք վերադառնալուց առաջ Սահակ Պարթևը պարսից արքունիքում բացատրություններ տվեց: Եվ դարձյալ նա իր ճարտասանական մեծ տաղանդով հիացրեց արքունիքի մարդկանց, որի համար պարսից թագավորը նրան մեծ պարգևներ տվեց:

Նա արդեն 84 տարեկան էր, երբ վերադարձավ Հայք: Դա 432 թվականն էր: Նա նստեց Բագրանդ գավառում, որտեղ էր Գրիգոր Լուսավորիչի կողմից կառուցված տաճարը: Հայ ժողովուրդը Շմուելին այնպես էլ չճանաչեց որպես իր կաթողիկոս: Հայերի սիրելին, ծաl.ր պահերի խորհրդատուն, միակ հայոց կաթողիկոսը մնում էր Սահակ Պարթևը:

431 թ. Փոքր Ասիայի Եփեսոս քաղաքում գումարվեց քրիստոնյաների տիեզերական ընդհանուր ժողովը, որտեղ եկեղեցուց վտարվեց ասորիների Ներսես եպիսկոպոսը և դատապարտվեց նրա ուսմունքը: Ընդունվեց Կյուրեղ Ալեքսանդրիացու բանաձևը Քրիստոսի մասին՝ «Մարմնացված բանի մը մնություն»: Սահակ Պարթևն ընդունեց այս որոշումը, և դրանից հետո մինչև օրս հայ եկեղեցին պահպանում է այն, դրա համար էլ կոչվում է միաբնակ:

439 թ. նոր պատերազմ սկսվեց Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև: Պատերազմի թատերաբեմը պետք է լիներ Հայաստանի հարավային մասը: Սահակ Պարթևը շտապեց գնալ խաղաղեցնելու, թույլ չտալու պատերազմի բորբոքումը: Բայց ճանապարհին՝ Բլուր գյուղում վախճանվեց 91 տարեկան հասակում: Դա նույն 439 թվականն էր, սեպտեմբերի 7-ը:

Սահակ Պարթևի մարմինը փոխադրվեց Տարոնի Աշտիշատ ամրոցը, որը գտնվում էր իր հայրենի կալվածքում: Այդտեղ էլ նա թաղված է: Այդ տեղում կառուցվել էր եկեղեցի: Այժմ հետքն անգամ չկա: Սահակ Պարթևը եղավ Գրիգոր Լուսավորչի տոհմի վերջին հայոց կաթողիկոսը:

Հեթանոսական շրջանում, հիշենք, որ հայերի կողմից շատ սիրված գործիչներն աստվածացվում էին: Այդպես աստվածացվեցին հայոց Հայկ ցեղապետը, Արամ և Արա (Արգիշտի) հայոց թագավորները: Քրիստոնեական շրջանում հայերի ամենից ավելի սիրված գործիչները սուրբ էին հռչակվում: Այդպես սուրբ հռչակվեց նաև Սահակ Պարթևը:

Սեպտեմբերի 9-ը հայ ժողովրդի մեջ հաստատվեց Սահակ Պարթևին նվիրված տոն: Այս տոնն ընդունված է եղել նաև ուրիշ քրիստոնյա ժողովուրդների մեջ:

Սահակ Պարթևի կատարած գործը շատ է գովաբանվել: Կա նաև հատուկ նրան նվիրված հայ եկեղեցու կանոնական շարական, որ երգվում է: Այդ շարականի մեջ կան այսպիսի տողեր. «Հայաստանի անգիտության խավարը փարատեցիր՝ իմաստության լույսը ծագեցնելով Թորգոմի որդիներիս վրա»: (Շարունակելի)

**ՄԱՆՎԵԼ ՄԻԿՈՅԱՆ**

## Ճառունակվող մղձավանջ

Դանթե՛, երջանիկ բանաստեղծ,
չտեսար մորմոքն իմ ազգի,
չտեսար դժոխքն իսկական.
մանկանց, ծերերին ու կանանց՝
թաղված իրենց իսկ տներում,
և քանի՜ փխրուն նորածին,
և որքա՜ն հարսներ երկունքում...
և քանի՜ սիրեցյալ փնտրող
ձեռքեր պաղեցին օդում:
Դարձել է երկիրն իմ սգյալ
հաշմված մարմին ու հոգի,
եթե ժպիտ կա՝ կոտրված,
եթե վայելք կա՝ սարքովի...
Դանթե՛, երջանիկ բանաստեղծ,
ի՞նչ էիր երկնելու դու հիմա,
եթե թաղվեիր մեզ նման
ամեն մի թաղվող հայի հետ
հարյուր ու բյուրավոր անգամ,
գայիր ու կանգնեիր այստեղ՝
դատարկ դագաղի կույտերի,
փլված տների արանքում...
Կլինե՞ր «Դրախտ» ու «Քավարան»,
թե՞ ողջը «Դժոխք» կլիներ,
և գուցե կարկամած հոգի:-
չջանար արարել ոչինչ...
Աստծո հետ դու էլ մեզ ների՛ր,
որ մենք ու մարդկությունը ողջ
պոեմդ սերտել չուզենանք,
Դանթե, երջանիկ բանաստեղծ:



Էլ ոչ լույսն է բարի, ոչ էլ մութը,
խեղդելով սակայն ցավն անասելի,
«բարի լույս» ենք ասում տեսնվելիս,
և ուզում ենք գոչել անվերջ՝ սուտ է:
Սուտ է, կապրենք ի հեճուկս չարի,
մեզ չի կոտրի ոչ մի հզոր աղետ,
տասնյակ հազարավոր անուն քարին...
ոչ, մեր սրտերում է գրվել հավետ:
Էլ ոչ լույսն է բարի, ոչ էլ մութը,
բայց «բարի լույս» կասենք նույնիսկ
մթնով,

ամենքը թո՛ղ ազգի տունը մտնող
բազում մանկանց ճիչով վանեն ցուրտը:
Ցուրտը՝ նախահարձակ լինող հանկարծ,
այս էլ քանի հարյուր ու բյուր տարի...
Բայց վիճակված է մեզ խաչվել անդարձ
հարատևման լեռան սուրբ կատարին:

Ձևավորում՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Տողեր Յուրա Ռյաբինկինի օրագրից՝ ԳՐՎԱԾ ԼԵՆԻՆԳՐԱԴՅԱՆ ԲԼՈԿԱԴԱՅԻ ՕՐԵՐԻՆ

ԱԼԵՍ ԱԴԱՄՈՎԻՉԻ ԵՎ ԴԱՆԻԼ ԳՐԱՆԻՆԻ «ԳԻՐՔ ԲԼՈԿԱԴԱՅԻ ՄԱՍԻՆ» ԺՈՂՈՎԱԾՈՒԻՑ



### ՅՈՒՐԱ ՌՅԱԲԻՆԿԻՆ—ՀԱՄԱՌՈՏ ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Ծնվել եմ 1925 թ. սեպտեմբերի 2-ին, Լենինգրադում: Ապրում եմ մայրիկի, քրոջս և մորաքրոջս հետ: Մորաքույրս այժմ ռազմաճակատում է: Քույրիկս 8 տարեկան է: Հայրիկը լքել է մեր ընտանիքը, ամուսնացել ու մեկնել է Կարելիա: Ես դպրոց եմ ընդունվել 1933 թ.: Այժմ փոխադրվել եմ 9-րդ դասարան:

**1 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ**

Սեպտեմբերի մեկին դպրոցում դասեր չեղան, ու հայտնի է՝ երբ կլինեն: Այսօր մթերքները վաճառում են միայն կտրոններով: Նույնիսկ լուցկին ու աղն էլ են կտրոնով դարձրել: Սով է սկսվում, դանդաղորեն, բայց հաստատուն:

Լենինգրադը շրջապատված է: Գերմանական դեսանտը կտրել է մեր քաղաքը ողջ ԽՍՀՄ-ից...

Տրամադրությունս զզվելի է: Չգիտեմ, երբևիցե կգտնե՞մ նախկին ուրախությունը:

**2 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ**

Անսովոր ոչնչով աչքի չընկավ իմ ծննդյան օրը: Մայրիկս ինձ 5 ռուբլի նվիրեց ճաշարան գնալու համար: Որոշեցի ինքս ինձ ուրախացնել: Մտա խանութ ու շախմատի դասագիրք գնեցի: Հետո եկա ճաշարան: Այստեղ այլևս էժան ոչինչ չկար:

**2 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Երեկոյան ինձ փորձություն են ենթարկում մայրիկն ու Իրան: Սեղանի շուրջ Իրան դիտավորյալ երկար է ուտում, որպեսզի ոչ միայն ուտելիքից հաճույք ստանա, այլև որպեսզի զգա, որ աճա ինքը ուտում է, իսկ մյուսները, որ վերջացրել են, նստել ու իրեն են նայում քաղցած աչքերով: Մայրիկը միշտ առաջինն է վերջացնում և հետո յուրաքանչյուրիցս փշուրներ վերցնում:

Ես առաջ օրվա մեջ երկու կամ երեք անգամ ճաշում էի ճաշարանում, գումարած կուշտ նախաճաշն ու ընթրիքը: Իսկ այժմ բավարարվում եմ առավոտյան 100 գ թխվածքաբլիթով, ոչինչ կեսօրին, երեկոյան մի աման սուպ ու մեծ քանակությամբ ջուր, ջուր՝ թեյի, սուրճի, սուպի անվան տակ...

**3 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Մայրիկը հիվանդացել է: Այսօր դուրս

չեկավ աշխատանքի։ Ջերմություն, ունկոնները ջարդվում են, ոտքերը ծանրացել են... Առանց այդ էլ դժվար էր, իսկ... Տրամադրությունս այնպես անկումային է։ Այլևս չեմ կարող գրել։

Հաղորդագրությունների համաձայն, գերմանացիները գրավել են Տիխվինը։ Սևաստոպոլը շարունակում է պաշտպանվել։

**5 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Միշտ է մայրիկը, լավին միշտ պետք է հավատալ։ Հիմա պետք է հավատալ, որ մեզ կէվակուացնեն։ Այդպես պետք է լինի ու կլինի։ Ոչինչ, որ մայրիկը հազիվ է քայլում՝ կլավանա, Իրան բողոքում է ձախ կողի ցավից՝ կանցնի։ Չնայած ես և մայրիկը տաք շորեր ու կոշիկներ չունենք՝ մենք դուրս կպրծնենք այս սոված գերությունից՝ Լենինգրադից։ Իսկ այժմ երեկո է, տագնապի ազդանշաններ են, խփում են հրանոթները, ռումբեր են պայթում...

**6 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Էվակուացման վերջնական կետն հայտնի է՝ Բարնաուլ։ Երկու հանգամանքից է կախված ամեն ինչ՝ ինչպես և ինչով գնալ։

**7 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Երեկ հետաքրքիր դեպքեր եղան։ Մայրիկը պայմանավորվելով ինչ-որ մեկի հետ, ապօրինաբար վերցրեց Սուխարյովի ծառայական կտրոնը։ Այդ կտրոնով 200 գ մակարոն գնեցինք, 350 գ կոնֆետ և 125 գ հաց։ Բոլորը, մակարոնից բացի, երեկ կերանք։

**8 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Իսկ այսօր... Այսօր կորցրեցի Սուխարյովի յուղի կտրոնը, այն, որ մայրիկը անլեգալ յուրացրել էր։ Ի՞նչ անել... Վախենում եմ, շատ եմ վախենում, որ յուրացման այս ամբողջ պատմությունը հայտնի կդառնա և այնժամ... իմ կյանքն էլ կքանդվի, ինչպես մայրիկի ու Իրայի կյանքը...

**9 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Մարզկոմը էվակուացիայի համար մայրիկին դրամ տվեց։ Երեկ հաշվեցինք՝ մոտ 1300 ռուբլի։ Մտածում եմ, որ եթե Սմոլնին դրական պատասխան տա, ես ավելի քան երջանիկ կլինեմ։ Այդ պատասխանը պետք է լինի, անհրաժեշտ է, որ լինի, կլինի, որովհետև... Ախր, ինչպե՞ս կարող է չլինել։

**10 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Տասնօրյակն ավարտվում է, իսկ էվակուացիայի հարցը դեռ բաց է։ Ինչպիսի տանջանք։ Գիտես, որ ամեն օրվա հետ քամվում են ուժերդ, որ թերսնումից օրեցօր քայքայվում ես ավելի ու ավելի և... Ավելի է արագանում դանդաղ մահվան գործողությունը...

**12 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Այժմ մայրիկը գնացել է բյուրո, որտեղ կտրոններն են բաժանում։ Եթե կտրոնի յուրացման պատմությունը բացահայտվի, ես կարող եմ նույնիսկ ինքնասպան լինել։

Մայրիկը տանը չէ։ Այսօր ուղղակի հայտարարում եմ. ամսից ավելի չենք ապրի Լենինգրադում։ Դա հավաստի է, ինչպես այն, որ 2×2=4-ի։

Երեկոյան ժամը 5-ն է, իսկ մայրիկը չկա։ Նշանակում է կամ յուրացման գործըն է բացահայտվել, և մայրիկին ձերբակալել են, կամ էլ ինչ-որ դժբախտ դեպք է պատահել։ Իսկ ինչո՞ւ մայրիկը վերցրեց կտրոնը։ Իհարկե, ինձ համար, իմ քաղցած տեսքի համար։ Այդ ես եմ նրան հանցագործության մղել։ Եթե չընկնեի մելանխոլիայի ու ունայնության մեջ, այդպես չէր լինի։ Իմ ազդեցությամբ է մայրիկը հանցանք կատարել, և նրա պատիժը ես պետք է ինձ վրա վերցնեմ։ Ու եթե չստացվի, կզրկեմ ինձ կյանքից, ես պարտավոր եմ ու կարող եմ դա անել. կամավոր ռազմաճակատ մեկնել և զոհվել հայրենիքի համար։

Իսկ մայրիկը չկա ու չկա։

**14 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Տանը՝ ոչ մի ուտելու բան, բացի 100 գ հացից։ Ատամս ցավում է, ընդհանուր թուլություն։ Բոլոր մտքերս կերակրի շուրջն են, հազիվ եմ ոտքերիս վրա կանգնում, այնպես որ, չնայած ռազմաճակատից եկող լավ լուրերին (գերմանական բանակի ջարդը Մոսկվայի, Ռոստովի, Տիխվինի մոտ), տրամադրությունս անկումային է։

**15 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**

Ապրված յուրաքանչյուր օրը ինձ ավելի է մոտեցնում ինքնասպանությանը։

Ելք չկա, փակուղի է, և չեմ կարող այլևս այսպես ապրել: Սով: Սարսափելի սով: Նորից լուր չկա էվակուացիայից: Ծանր է ապրելը: Ապրել, չիմանալով նպատակը, ապրել, հանձնելով ողջ կյանքըդ սովին ու ցրտին: Չեմ կարող... Իմ կողքին մայրիկն ու Իրան են: Չեմ կարող խլել նրանցից նրանց կտոր հացը: Չեմ կարող, քանի որ գիտեմ՝ ինչ ասել է այժմ հացի փշուր: Տեսնում եմ, որ նրանք իրենց բաժինը կիսում են ինձ հետ և ես, արիկաս, նրանց քթի տակից թոցնում եմ նրանց վերջին գրամն էլ: Ո՞ւր եմ հասցրել, որ երեկ մայրիկն արցունքն աչքերին ասաց, թե անկեղծ իմ մահն է ցանկանում, նրա և Իրայի հացի հավելյալ 10—15 գրամը գողանալու համար...

Ահա և վերջ... Ես կորցրեցի իմ ազնըվությունը... Երկու օր առաջ ինձ ուղարկել էին կոնֆետ գնելու: Հերիք չէ կոնֆետի փոխարեն շաքարով կակաո գնեցի (հաշվարկելով, որ Իրան այն չի ուտի և իմ բաժինը կավելանա), դեռ յուրացրի ողջ տասնօրյակի մեզ հասանելիքի կեսը ու հորինեցի, թե ձեռքիցս երեք տուփ կակաոն թոցրել են: Արցունքոտ աչքերով կատակերգություն էի խաղում և մայրիկին ազնիվ պիոներական խոսք տվեցի, որ ոչ մի տուփ կակաո ինձ չեմ վերցրել: Հետո վայրենացած, նայելով մայրիկի արցունքներին ու վշտին, թաքուն կերա: Ես անդունդ եմ գլորվել: Ես անարժան որդին եմ իմ մոր և անարժան եղբայրն իմ քրոջ: Ես եսասեր եմ, մարդ, որ դըժվարին պահին մոռանում է իր հարազատներին: Միաժամանակ իմ վարմունքից մայրիկն է ուժասպառվում: Ուռած ոտքերով, առանց կտոր հացի, վազում է տարբեր հաստատություններ, խղճուկ հանձնարարություններ կատարում, որպեսզի հանի մեզ այստեղից: Էվակուացիային այլևս չեմ հավատում: Ինձ համար կյանքը վերջացած է: Այն, ինչ ինձ սպասում է առջևում, կյանք չէ: Հիմա երկու բան կուզեի, մահանալ, և թող մայրիկը կարդար այս օրագիրը:

## 2 ՀՈՒՆՎԱՐԻ, 1942 ԹԻՎ

Արդեն քանի օր է՝ չեմ գրել: Ինձ հետ փոփոխություններ են կատարվել: Ինձ թվում է՝ ինչ-որ լավ բան է հայտնվել բնավորությանս մեջ: Ես ուզում եմ փոխվել, ուզում եմ ինձ համար այլ բնավորություն կոփել, սակայն զգում եմ, որ առանց մայրիկի ու Իրայի օգնության հազիվ թե հասնեմ իմ նոր ազնիվ կյանքին...

Այսօր ես բազմաթիվ օրերի ընթացքում առաջին անգամ ամբողջովին տուն բերեցի կոնֆետը, կիսեցի հացը մայրիկի ու Իրայի հետ, չնայած ուրիշ անգամ թաքուն մի քանի փշուր կփախցնեի: Եվ իմ հանդեպ զգացի նրանց ջերմ վերաբերմունքը, երբ նրանք իրենց բաժին կոնֆետից ինձ բաժին հանեցին. մայրիկը քառորդ կոնֆետ (չնայած նորից ետ վերցրեց) և Իրան՝ կես կոնֆետ: Սրանք այն մարդիկ են, որոնց խաբել եմ և որոնք այժմ գիտեն իմ նախկին խաբեությունների մասին: Այո, ի՞նչ չի կարող անել միայն լավ մոտեցումը: Բայց հետո... Նույն մայրիկը ինձնից վերցրեց պրյանիկը, ավելորդ կոնֆետ խոստանալով (իսկ ավելորդ կոնֆետն ինքը ստացավ), իսկ այդ նույն Իրան լալիս էր, որովհետև մայրիկը ինձ և նրան միանման, մեկական կոնֆետ տվեց:

Շրջկոմում մայրիկին խոստացել են էվակուացնել ամսի 28-ին: Եթե մեկ օր էլ հետաձգեն, կորած ենք, քանի որ մեզ երկու, հազիվ երեք օրվա կտրոն է մնացել, ոչ ավելի: Մայրիկի առողջությունը ավելի է վատացել: Վերջնականապես ոչլոտել եմ: Իմ ու Իրայի դեմքերը մի քիչ ուռել են:

## 2 ՀՈՒՆՎԱՐԻ, 1942 ԹԻՎ

Համարյա վերջին գրառումն է օրագրում: Վախենում եմ, որ այն էլ... և օրագիրը չկարողանամ ավարտել, որպեսզի վերջին էջի վրա գրեմ՝ «վերջ»: Իսկ այնպես ուզում եմ ապրել, հավատալ, զգալ... Սակայն... Էվակուացիան միայն գարնանը կլինի: Իսկ մինչև գարուն չեմ ապրի: Ես ուռել եմ, իմ հյուսվածքի յուրաքանչյուր բջիջ ավելի շատ ջուր է պարունակում, քան անհրաժեշտ է: Ծուլանում եմ շարժվել, ծուլանում եմ բարձրանալ աթոռից, քայլել: Եվ այդ ամենը ջրի գերհագեցվածությունից է, ուտելիքի պակասից: Ողջը ջրալի, ջրալի, ջրալի...

Մայրիկի նյարդային համակարգը այնպիսին է, որ ամեն պահ կարող է անջատվել և այնժամ... Առաջներում էլ էր ասում, որ եթե նույնիսկ ինքն ու Իրան ազատվեն, միևնույն է, ես չեմ կարող դուրս պրծնել ու ոտքերս կձգեմ: Բայց մի՞թե այդպես կլինի: Ի՞նչ անել,

տեր աստված: Չէ՞ որ ես կմեռնեմ, կըմեռնեմ, իսկ այնպես ուզում եմ ապրել, գնալ, ապրե՜լ, ապրե՜լ...

Մայրիկը չափազանց կոպիտ է դարձել ու երբեմն ծեծում է ինձ, իսկ հայհոյանքները լսելի են ամեն քայլափոխի:

## 3 ՀՈՒՆՎԱՐԻ

Ի՞նչ կլինի մեզ հետ ամսվա վերջին, ի՞նչ մուրացկանների կփոխակերպվենք, եթե ինչ-որ երջանիկ շնորհ, աստծո ողորմություն, երկնային փրկություն դուրս չքաշի մեզ այստեղից: Միայն աստվածը, եթե կա, կարող է մեզ մխիթարել: Թող նա մեզ փրկի այժմ, և երբեք, այլևս երբեք առիթ չի լինի խաբելու մայրիկին, երբեք չեմ մրոտի իմ մաքուր անունը: Ես երդվում եմ իմ ամբողջ կյանքով, որ հավիտյան վերջ կտամ իմ ըստոր խաբեբայական կյանքին, ազնիվ ու աշխատավոր կյանք կսկսեմ ինչ-որ գյուղում և մայրիկին երջանիկ ու ոսկե ծերություն կնվիրեմ:

Միայն հավատը աստծո, միայն հավատը առ այն, որ հաջողությունը չի լըքի ինձ և մեզ երեքիս, միայն դա է պահում ինձ ոտքի վրա: Այլ պարագայում զոհված կլինեի: Բայց ես ուզում եմ մընալ, ավելի ճիշտ, կուզենայի, բայց չեմ կարող... Միայն վաղվա մեկնումը... Ես կկարողանամ իմ վատ վերաբերմունքը մայրիկի, Իրայի հանդեպ լավով փոխհատուցել: Տեր, միայն թե փրկիր ինձ, էվակուացիա նվիրիր, փրկիր մեզ՝ և՛ մայրիկին, և՛ Իրային, և՛ ինձ:

## 6 ՀՈՒՆՎԱՐԻ

Ես համարյա բոլորովին չեմ կարողանում քայլել ու աշխատել: Մայրիկը նույնպես հազիվ է քայլում, և չեմ պատկերացնում, թե ինչպես է քայլում: Այժմ նա հաճախ է ինձ ծեծում, հայհոյում, աղմկում: Նյարդային բուռն ցնցումները տանջում են նրան: Նա չի կարողանում տանել իմ անպետք տեսքը, ուժասպառված տեսքը, քաղցած, տանջված մարդու տեսքը, որը մի կերպ է տեղից տեղ շարժվում, խանգարում է և հիվանդ «ձևանում»: Բայց ես չեմ ձևացնում, դա սիմուլյացիա չէ, ուժերը... Ինձ լքում են, լքում են, թռչում... Իսկ ժամանակը ձգվում է, ձգվում է և երկար, երկար... O, տեր, ի՞նչ է կատարվում ինձ հետ:

Եվ այժմ ես, ես, ես...

ՍԻՎՐԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

# Հանուն մեր սուրբ ազատության

Հանուն մեր սուրբ ազատության,
Մեր գոյության, մեր հավատի,
Հանուն արդար մեր տքնության,
Մեր ինքնության ու մեր դատի.
Մեր հայկազուն արյան կանչով,
Նվիրումով մեր անձնուրաց,
Մեր մշտարթուն մաքուր խղճով
Եվ դրոշով մեր փառապանծ
Կառափնարան էլ կգնանք,
Կհրկիզվենք խարույկներում,
Հպարտ, անպարտ կմոտենանք
Կախաղանին անագորույն,
Եվ կկրենք փշե պսակ,
Եվ կհագնենք փշե շապիկ,
Եվ կտանենք մահ ու արյուն,
Ամեն փորձանք ու արհավիրք:
Թեկուզ մեզ խաչ հանեն էլի,
Անարգանքի սյունին գամեն
Եվ ոխակալ ատելությամբ
Գանակոծեն ու անարգեն,
Թեկուզ քանդեն բերդերը մեր,
Գան մեզ վրա զենք ու զորքով,
Չէ՛, չենք անցնի հեզ-հնազանդ
Բռնակալի թրի տակով:
Չէ, չենք չոքի, ծնկի չենք գա
Բիրտ ու անարգ գահի առաջ
Ու չենք պղծի շուրթերը մեր
Աղերսներով լալահառաչ:
Ինչ էլ լինի, մենք չենք դավի
Մեր դարավոր դավանանքին,
Կպահպանենք աստվածաշունչ,
Վեհ ու վսեմ հայոց ոգին:
Մենք՝ ի զորու մեր ինքնությամբ
Եվ լեռնանալ, և զորանալ,
Մեր հանճարով, մեր տքնությամբ
Եվ կարծրանալ, և նորանալ,
Ի հեճուկս մեր հին ու նոր
Ոսոխների նենգ ու վայրագ՝
Մենք եղել ենք ու կլինենք
Հայոց անմար արևի տակ:



Լուսինյան արքայատան զինանշան

# ԽՈՐՀՐԴԱՆԻՇ ԱԶԳԱՅԻՆ ԻՆՔՆՈՒԹՅԱՆ



Հեթումյանների զինանշան

Գերբերը՝ զինանշանները, իրենց խոսուն բովանդակությամբ կարող են լրացնել պատմության որևէ բաց կողմ և հաճախ էլ որոշ թեմաներ ուսումնասիրելիս եզակի աղբյուր են հանդիսանում:

Հայկական գերբագիտությունը, ցավոք, այնպիսի դասական ավանդույթներ չունի, ինչպես եվրոպական շատ երկրներում: Դա առաջին հերթին պայմանավորված է պետականությունից վաղ զրկվելու և հարյուրամյակներ շարունակ գոյատևելու համար հայ ժողովրդի մղած կենաց ու մահու պայքարի հետ: Սակայն վստահորեն կարելի է ասել, որ հայոց զինանշաններն այն եզակիներից են, որոնք ստեղծվել են մարդկային քաղաքակրթության արշալույսին, անցել զարգացման ու մշակման փուլեր և օրինակ հանդիսացել այլ ժողովուրդների ու պետությունների, ինչպես նաև դասական գերբագիտության համար:

Հայոց առաջին թագավորները, իրենց հզորությունը շեշտելով՝ անվանում էին իրենց «Տիեզերքի արքա»: Հետևաբար, որպես զինանշան պիտի ընտրեին Տիեզերքի խորհրդանիշը, որն այն ժամանակների պատկերացումով արեգակն էր:

Վանում պեղվել է Արարատյան երկրի արքաներին պատկանող նման զինանշան, որը թվագրվում է մ. թ. ա. 730 թվականով: Գտածոն թագավորական վահանի կտոր է՝ կենտրոնում արևի պատկերը: Այդ ժամանակվա որմնանկարներում ևս հանդիպում է արևի նշանը՝ առանձին, հաճախ էլ՝ մեկ կամ զույգ առյուծներով և այլն:

Արտաշեսյան հարստության արքաները առյուծները փոխարինեցին զույգ արծիվներով՝ կենտրոնում թողնելով արևի պատկերը: Այս զինանշանը նույնությամբ պահպանեցին Արշակունի թագավորները:

Մեծ Հայքի վերջին թագավորների՝ Բագրատունիների, զինանշանն էլ արծիվն էր, որ դարեր շարունակ հպարտորեն ծածանվել է հայոց դրոշների վրա:

Մեզ են հասել նաև հայկական ամրոցների ու եկեղեցիների բարձրաքանդակներում պատկերված նախարարական և իշխանական տների զինանշանները: Այնտեղ դրոշմված են առյուծ, ձի, վարազ, արծիվ, այսինքն այն կենդանիները, որոնք Հայկական լեռնաշխարհի հնաքնակներ են և որպես ուժի խորհրդանիշ՝ պաշտվել են մեր նախնիների կողմից: Ամենատարածվածները արծվի տարբեր պատկերներն են՝ իրենց մագիլներում թռչուն, գառ, նիզակ և այլն, իսկ Մամիկոնյան տոհմին պատկանող զինանշաններից մեկում երկգլխանի արծիվ է: Բուխարեստի պետական արխիվում պահվում է երկգլխանի արծվի պատկերով մի զինանշան, որը նույնպես հայկական ծագում ունի: Այն Ռումինիայում հաստատված հայ գաղթականների հիմնած Արճեշ քաղաքի գերբն* է:

Իրենց պատկերներով բազմազան են եղել Կիլիկիայի հայոց թագավորների գերբերը: Այնտեղ խաչի նշանը հանդիպում է գրեթե ամենուր՝ առանձին կամ առյուծի հետ մեկտեղ: Խաչը երբեմն եզրազարդված է հնգաթև աստղի նշաններով: Եղել են նաև ամրոց-աշտարակներ պատկերող գերբեր: Սակայն առա-



Հեթումյան—Լուսինյան արքայատների միացյալ զինանշան



Հայկական մարզի զինանշան

Կիլիկյան հայկական թագավորության զինանշան



վել ուշագրավը Լևոն Բ թագավորի զինանշանն է թագակիր ու խաչակիր առյուծի պատկերով և «Ողորմութեամբ Աստուծոյ Հայոց թագաւոր» նշանաբանով, որը խորհրդանշում է թագավորության անկախությունը, իսկ թագակիր առյուծի պատկերը՝ նրա հզորությունը:

Հայկական գերբագիտության ամենահետաքրքիր նմուշներից մեկի՝ **Կիլիկիայի հայոց Լուսինյան** արքայատանը վերագրվող գերբի օրինակով փորձենք ցույց տալ, թե ինչպես էին կազմվում զինանշանները, և հիմնավորել դրանց տարրերից յուրաքանչյուրի ոչ մտացածին, օրինական լինելու հանգամանքը՝ ելնելով գերբագիտության կանոններից:

Նախ ասենք, որ ազնվականական, ասպետական գերբերը լայն կիրառություն գտան հատկապես խաչակրաց արշավանքների ժամանակ: Գերբն իր դասական ձևով ծագել է Գերմանիայում և կոչվում էր «ՀԵՐԱԼԴ»՝ վետերան: Այդպես էին անվանում այն ասպետներին, ովքեր ճակատամարտերի, մրցույթների ժամանակ իրենց թիկնոցներին կրում էին տարբեր քաջությունների համար ստացած պարգևների և աստիճանների խորհրդանշական պատկերներ: Քանի որ զրահներն ու համազգեստները նման էին իրար և ասպետներն արտաքուստ իրարից չէին տարբերվում, հետևաբար զինանշաններն անհրաժեշտ էին՝ իմանալու համար ասպետի ազնվական տիտղոսն ու ստացած պարգևները, որոնք բարձրացնում էին այն կրողի հեղինակությունը: Մասնագետների կարծիքով, այդ ժամանակներում ասպետներն անպայման գերբ էին կրում: Իտալացի իրավաբան Բարտոլոն կազմել էր նույնիսկ գերբագիտության առաջին կանոնները, իսկ Ցյուրիխում 1320 թ. կազմվել էր գերբերի առաջին ժողովածուն: Գերբ կրողին պաշտոնապես տրվում էր «Գերբային պատվոգիր», որտեղ նկարագրըվում էր գերբը և հաստատվում այն կրելու իրավունքը»:

Կիլիկյան թագավորներն էլ, լինելով ասպետական օրդենի անդամներ, մասնակցելով ճակատամարտերի ու մըրցույթների, անկասկած ստացել են գերբ կրելու նման պաշտոնական իրավունք և կրել են իրենց զինանշանները, որոնցից մեկն էլ ստորև նկարագրվող գերբն է:

Կզաքիսի սպիտակ մորթե պատմուճանի գերբային պատկեր՝ գերբի գծա-

նկարչական տարատեսակներից մեկը, վերևի մասում՝ մեծ թագ, որը գերբագիտության մեջ կոչվում է «անտիկ»: Պատմուճանի կենտրոնի ֆրանսիական «երկատված» վահանի աջ մասում պատկերված են խաչ և մեկ թագակիր առյուծ՝ ետևի ոտքերին կանգնած, աջ կիսադեմով, ինչպես ընդունված է գերբագիտության մեջ: Նույնպիսի երկու առյուծներ են պատկերված նաև ձախ մասում: Վահանի վրա կա մեկ այլ՝ «գերմանական» թագ, իսկ վահանի շուրջը բոլորաձև լատինական «Տ» և «Ր» տառերն են: Գերբի բաղկացուցիչ մասն է այն երիզող ժապավենը՝ «Հանուն հավատարմության» նշանաբանով:

Կանոնադրության համաձայն՝ գերբում վահանի վրա թագ պատկերելու իրավունք ունեին կոմսերը, իսկ պատմուճանի վրա՝ միայն իշխանները: Պատմուճանի վրա մեծ թագ պատկերելու արտոնությունը տրված էր թագավորներին, արքայական ընդոծիներին:

1198 թ. երբ Կիլիկիայում թագադրվեց Լևոն Բ իշխանը, նրան թագեր ուղարկեցին բյուզանդական և գերմանական կայսրերը: Այսպիսով, Կիլիկիայի արքան թագադրվեց կրկնակի թագերով: Հետևաբար, որպես կրկնակի թագակիր, ինչպես նաև որպես արքայական ծագում ունեցող հորից և մորից սերված ասպետ, օրենքը նրան չէր արգելում գերբի վրա ունենալ երկու թագ:

Վահանի ֆրանսիական տեսակը, որը գերբում կրել են Լուսինյանները, հիմնավորապես իրացվել և լայնորեն կիրառվում էր եվրոպական գերբագիտության մեջ:

Իրենց տեսակներն ունեն նաև գերբային խաչերը: Այն խաչը, որ պատկերված է նկարագրվող գերբում, կոչվում է «երուսաղեմյան»:

Խաչը գերբի մեջ մտել է խաչակրաց արշավանքների ժամանակ և դրանց հետևանքով: Արշավանքի բոլոր մասնակիցներն իրենց թիկնոցներին կրում էին «երուսաղեմյան» խաչեր, քանի որ նրանց վերջնակետը Երուսաղեմն էր, նպատակը՝ Քրիստոսի մասունքներն անհավատներից փրկելը: Կիլիկիայի թագավորները մասնակցել և օժանդակել են խաչակրաց մի քանի արշավանքների և նույնիսկ իրենք են հաճախ դեսպանություններ ուղարկել Հռոմի պապի և եվրոպական կայսրերի մոտ՝ խաչակրաց նոր արշավանքներ կազմակերպելու խնդրանքով՝ հույս ունենալով նրանց օգնությամբ ազատվել մահմեդական ասպատակություններից: Հետևաբար, Կիլիկիայի թագավորներն ու ասպետները նույնպես, որպես խաչակիրներ, իրենց թիկնոցներին կրում էին «երուսաղեմյան» խաչեր և գերբում դրանք պատկերելու լիակատար իրավունքն ունեին:

Առյուծի պատկերը, ինչպես տեսանք, տարածված է եղել հայկական զինանշանների վրա: Այն դրոշմված էր նաև Կիլիկիայի պետական գերբի և դրոշի վրա: Լուսինյան արքայատան գերբի երեք առյուծի պատկերը կապված է այդ թվանշանի խորհրդանշական իմաստի հետ, որն ընդունված էր հնում: Այդ թվով է մեծարվել Դավիթ Անհաղթը՝ «եռամեծար», եռագույն են եղել դրոշները և այլն: Գերբում երեք առյուծի պատկերը արտահայտում էր եռակի ուժ և եռակի խիզախություն: Լուսինյանների զինանշանում պատկերված առյուծները թագակիր են: Այն գերբագիտության մեջ համարվում է «հայկական առյուծ»:

Գերբում եղած տառերի բացատրությունը, կարծում ենք, հետևյալն է. «Ր»-ը խորհրդանշում է Ռուբինյան տունը, թագավորական հարստությունը, քանի որ գերբի հիմնական տարրերը՝ պատմուճան, թագ, վահան, առյուծ, ժառանգվել են նրանցից: Իսկ «Տ» տառը ցույց է տալիս նրանց «ասպետական կարգը»: Ավանդության համաձայն՝ Լուսինյանները Պաղեստինի Սինա լեռան վրա հիմնել էին Սուրբ Կատարինե վանքը, իրենց համարում էին «Սինա լերան Սրբուհի Կատարինեի ասպետ» և համապատասխան պատվանշան ունեին:

Պատմուճանը երիզող «Հանուն հավատարմության» նշանաբանը, մեր կարծիքով, բոլորովին էլ պատահական չէ: Այդ խոսքերը վերաբերում էին ինչպես գերբը կրողին, այնպես էլ, և ավելի շուտ, նրա դաշնակիցներին: Իրենց պատմության ընթացքում Կիլիկիայի թագավորները բազմիցս փոխադարձ օգնության ունիաներ՝ պայմանագրեր են կնքել խաչակիր օրդեններ, Հռոմի պապի, եվրոպական մի շարք պետությունների, ինչպես նաև դեպքերի զարգացման տարբեր աստիճաններում՝ Եգիպտոսի և մոնղոլների հետ: Բայց բազմիցս էլ երկուստեք դրժել են այն, հայերը՝ վախենալով իրենց հովանավորների զոհը դառնալուց,

դաշնակիցները՝ չցանկանալով հարաբերությունները վատացնել ավելի ուժեղ պետությունների հետ կամ իրենք էլ նըվաճողական նկրտումներ ունենալով Կիլիկիայի նկատմամբ: Թերևս, հենց այդ պատճառով էլ Լուսինյաններն ընտրել էին այս նշանաբանը:

Կիլիկյան թագավորության անկումից հարյուրամյակներ հետո, երբ Արևելյան Հայաստանը միացվեց Ռուսաստանին, ռուսական գերբերի ազդեցությամբ ըստեղծվեցին հայկական նոր գերբեր՝ Հայկական մարզի, Ալեքսանդրապոլի, Երևանի, Կարսի և այլն: Այնտեղ պարտադիր էին երկգլխանի արծվի և ռուսական թագի պատկերները: Ինչ խոսք, գերբերն ունեին նաև հայկականին բնորոշ հատկանիշներ:

1918 թ. մայիսի 28-ին հռչակվեց Հայաստանի Հանրապետությունը: Անհրաժեշտ էր ստեղծել նաև Հանրապետության պետական զինանշանը: Առաջարկվեցին մի շարք տարբերակներ, քըննարկմանը մասնակցեցին հայագետներ, նկարիչներ, պետական գործիչներ: Մի հարցում բոլորը համամիտ էին. զինանշանն իր մեջ պիտի ամփոփեր հայ ժողովրդի հինավուրց պատմությունն ու դարավոր իղձը, որն իրականացնելու հույս էր ներշնչել սեփական ուժով անկախությունը վերանվաճելու փաստը և միացյալ Հայաստանի անկախության հռչակման ակտը, որը հրապարակվեց 1919 թ. մայիսի 28-ին՝ Հանրապետության ստեղծման տարելիցի օրը: Այնտեղ Հայաստանի կառավարությունը հայտարարում էր «Հայաստանի բոլոր մասերի՝ Թյուրքաց Հայաստանի, Կիլիկիայի և նախկին Ռուսաց Հայաստանի միացման և անկախության» մասին:

Բուռն վեճերի պայմաններում 1920 թ. հուլիսին կառավարությունը ժամանակավորապես՝ մինչև սահմանադիր ժողովի հրավիրումը, ընդունեց տարբերակներից մեկը: Այն պատրաստել էին ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանը և նկարիչ Հակոբ Կոջոյանը: Հ. Ստեփանյանը զինանշանը նկարագրում է հետևյալ կերպ. «Վահանը բաժանված էր չորս մասի, յուրաքանչյուրում՝ հին Հայաստանի չորս անկախ շրջաններից մեկի զինանշանը՝ Արտաշեսյան, Արշակունեաց, Բագրատունեաց, Ռուբինեանց, մեջտեղը Մասիսները և Հ. Հ. տառերը, վահանի աջ ու ձախ կողմերում՝ մի արծիվ և մի առյուծ, իսկ ներքևում՝ սուր, գրիչ, հասկեր և շղթայ»: Սակայն կառավարության հաստատումից հետո, հավանաբար, որոշ տարրերի և դասավորության փոփոխություններ մտցվեցին, քանի որ Հայաստանի պատմության արխիվում պահպանված միակ օրինակի վրա հետևյալ պատկերն է. կլոր՝ հայկական կամ արևելյան վահանի վրա Հայոց պետականության երկու առանձին, անկախ ու մեծ հատվածները խորհրդանշող Մեծ Հայքի արծիվն ու կիլիկյան առյուծն են՝ բռնած չորս մասի բաժանված մեկ այլ, ֆրանսիական վահան՝ Հայոց պատմության չորս ամենախոշոր խորհրդանիշ-զինանշաններով: Դրանք են Հայոց առաջին՝ Արարատյան թագավորության արևակիր առյուծը, Հայոց ամենահզոր՝ Արտաշեսյան հարստության զինանշանը, Հայոց ամենավերջին՝ Կիլիկյան թագավորության խաչակիր և թագակիր առյուծը և Հայաստանի վերջին գերիշխանության՝ Ռուսական կայսրության երկգլխանի արծիվը: Վրադիր վահանում Արարատն է, գագաթին՝ Նոյան տապանը: Ֆրանսիական վահանի տակ սիմետրիկ դասավորությամբ. պատկերված են երկսայրի սուր, պոկված շղթաներ, դափնեճյուղ, ցորենի հասկեր և ժապավեն, որի վրա սովորաբար գրվում է նշանաբան կամ պետության անունը: Գերբի պատկերը միագույն է, սակայն գերբագիտության կանոններով կարելի է գունաբաշխում կատարել:

Խորհրդային կարգերի հաստատումից հետո նախկին Ռուսական կայսրության տարածքում ստեղծված հանրապետություններին թելադրվեցին գերբերի նոր տեսակներ: Այնտեղ պիտի բացառվեին կենդանիների, թռչունների, զենքերի պատկերները:

Ստեղծվեցին գրեթե միանման գերբեր, որոնց մեջ Հայաստանի խորհրդային հանրապետության զինանշանն այնուամենայնիվ յուրատեսակ է՝ հայկական գերբերի պահպանված տարրերի առկայության շնորհիվ: Դրանք են շրջանաձև հայկական վահանն ու Արարատ լեռը: Կառավարության հանձնարարությամբ այն կազմել էին Հակոբ Կոջոյանն ու Մարտիրոս Սարյանը:

**ԱՐԱ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ**

րապետությանը: Սակայն ապրիլի 23-ին Բաքու մտած 11-րդ կարմիր բանակը Ադրբեջանում հաստատեց խորհրդային կարգեր և ադրբեջանական ուժերի հետ միասին արշավեց Արցախի վրա: Նժդեհն ու Դրոն հարկադրված հեռացան: Արցախը կարմիր բանակի օգնությամբ ընկավ Ադրբեջանի գերիշխանության տակ:

Ի՞նչ եմ ուզում ասել: Արցախի հարցը դեռ այն ժամանակ էր արցախահայությունը լուծել, բայց երրորդ ուժը (ցավոք, նորից Մոսկվան) տապալեց այն:

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԼԵՌՆԻԿ.— Ես էլ եմ համամիտ Վազգեն Մանուկյանի հետ: Մեր հարցերը մենք պետք է լուծենք, առանց երրորդ կողմի: Ինձ թվում է, որ առճակատում կլինի միևնույն երրորդ կողմի միջամտության դեպքում: Երրորդ կողմը միշտ էլ խանգարել է այս պրոբլեմի խաղաղ լուծումը:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԿԱՐԻՆԵ.— Մեր հարցը պետք է լուծենք ինքներս: Ուզում եմ ասել, որ Մոսկվան ավելորդ է, այսինքն՝ երկու պետությունները պետք է որոշեն իրենց մեջ ծագած վիճելի հարցը: Իսկ Մոսկվան թող ոչ հաղթողին որոշի և ոչ էլ պարտվողին: Հաշվի առնելով ներկա ժամանակները, այն ժամանակ էլ (երբ երկու հանրապետությունները լինեն ազատ, անկախ) առճակատում կլինի: Չէ՞ որ ներկա դրությամբ էլ է պատերազմ («չհայտարարված»):

Հիմա դեռ նրանք անկախ չեն, բայց այն ժամանակ, երբ լինեն, Ադրբեջանի թիկունքում դարձյալ Թուրքիան կլինի:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՍԻՐԱՆՈՒՇ.— Անցած երկու տարիների ընթացքում երրորդ կողմը արցախյան հարցին միայն վնաս բերեց: Կայսրության շահերը չեն համընկնում մեր շահերի հետ: Մեզ օրորոցից հավատացնում են, որ մենք այնքան թույլ ենք, այնքան անօգնական, որ մեզ կհոշոտեն Ադրբեջանն ու Թուրքիան: Բայց այս վերջին դեպքերն եկան ապացուցելու, որ 1915 թվականի պես այլևս չի լինի: Եթե չլինի երրորդ կողմը, անպայման կլինի առճակատում, բայց դա դեռ չի նշանակում, որ մենք պարտված դուրս կգանք այդ առճակատումից: Եթե մենք և հարևան հանրապետությունն անկախ լինենք, բանակցությունների սեղանին կնստենք որպես հավասար պետություններ, և մեր հարցերը չի լուծի մի երրորդ պետություն այնպես, ինչպես իրեն է ձեռնտու, մանավանդ եթե հաշվի առնենք, որ նրա շահերը մեր շահերի հետ չեն համընկնում:

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ ԱՐՄԱՆ.— Երրորդ կողմի միջամտությունը շատ դեպքերում կործանարար է եղել մեզ համար: Երրորդ կողմը կործանեց դաշնակցական անկախ Հայաստանը: Երրորդ կողմը կնքեց 1921-ի ռուս-թուրքական պայմանագիրը: Երրորդ կողմը Նախիջևանը և Արցախը տվեց Ադրբեջանին: Իսկ եթե Գարեգին Նժդեհը չլիներ, Հայաստանի կեսը նույնպես կկցվեր Ադրբեջանին:

Հիմա մենք, որքան կարելի է, պետք է լավ հարաբերություններ պահպանենք մեր հարևանների հետ: Չմոռանանք, որ ինչ էլ անենք, նրանք մեր կողքին են, և ինչի՞ նման կլինի, եթե փոքրիկ Հայաստանը անընդհատ թշնամական հարաբերությունների մեջ լինի իր հզոր հարևանների հետ:

Այժմ անդրադառնանք Արցախի խնդրին: Եթե Հայաստանն ու Ադրբեջանը քննարկեն Արցախի հարցն առանց երրորդ կողմի միջամտության, նշանակում է նրանք պետք է անկախություն ստացած լինեն: Այդ դեպքում առճակատում անպայման կլինի, որովհետև ոչ մի պետություն խաղաղ ճանապարհով իր կազմում գտնվող հողերը չի զիջի մի այլ պետության: Իսկ եթե հանկարծ Արցախի համար պատերազմ սկսվի Հայաստանի և Ադրբեջանի միջև, մենք չպետք է մոռանանք Թուրքիայի գոյությունը և նրա հնարավոր միջամտությունը:

Այս ամենը թողնենք ապագային: Մինչև անկախության հասնելը Հայաստանը պետք է գոնե տնտեսապես հզոր լինի, որը հետագայում կհանգեցնի նաև ռազմական հզորության:

Թ. Տ.— Իմ կարծիքով, Արման, այս դեպքում հզոր գործոն է գիտությունը: Ճիշտ ես: Միայն գիտությունը կկարողանա պարտադրել, որ հարգեն պատմական ճշմարտությունը: Իհարկե, բարի և արդար ձեռքում գտնվող գիտությունը: Եվ ընդհանրապես ինձ թվում է, որ գիտությանն է պատկանում ոչ միայն նմանատիպ խնդիրների կարգավորման, այլև մեծ մասշտաբի աղետներից մարդկությանը փրկելու դերը: Իսկ նման աղետներ, մանավանդ էկոլոգիական բնույթի, քաղաքակրթությանը դեռ սպառնում են և սպառնալու են այնքան ժամանակ, քանի դեռ մարդկության գերակշիռ մասը մեր մոլորակին վերաբերվելու է սպառողական հոգեբանությամբ: «Նաիրիտի» գոյությունը մեր գիտության հետամնացության արդյունքն է: Զարգացած երկրներում «Նաիրիտի» արտադրանքը ստանում են ավելի անվնաս միջոցներով: Իսկ մեր երկրում փոխանակ այդ մասին մտածելու, Մինիստրների խորհրդի









Լուսանկարները՝ ԼԵՎՈՆ ԱՐՍԵՆՅԱՆՑԻ

նախագահ Ն. Ի. Ռիժկովը հեռագիր է ուղարկում հայ ժողովրդին՝ «Նաիրիտը» չփակելու խնդրանք-հորդորներով, թե՝ բանականություննդ կորցրած հայ ժողովուրդ, խելքի արի, որովհետև 14 միլիարդի վնաս ես արդեն հասցրել պետությանը «Նաիրիտը» փակելով: Իսկ մեզ ասում էին, թե Հայաստանը վնասով է աշխատում, դու մի ասի մոտ 3 միլիարդ բյուջե ունեցող այս փոքրիկ Հայաստանի «Նաիրիտը» տասնյակ ու հարյուրավոր միլիարդներ արժի:

Այ, եթե ձեզ հնարավորություն տրվեր պատասխանելու այդ հեռագրին, ինչպե՞ս դա կանեիք: Այսինքն՝ ավելի ճիշտ՝ ո՞վ պետք է ձեզ հնարավորություն տա կամ չտա: Եթե ուզենաք, կարող եք անգամ հեռագրել Մոսկվա, ԽՍՀՄ Մինիստրների խորհուրդ, Ն. Ի. Ռիժկովին: Ուրեմն՝ ինչպիսի՞ բովանդակությամբ նամակ կամ հեռագիր կհղեիք՝ ի պատասխան Ն. Ի. Ռիժկովին: Շարադրեք ձեր հեռագրի կամ նամակի տեքստը:

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ ԱՐՄԱՆ.— Ես ավելորդ եմ համարում նամակ գրել Ռիժկովին: Մենք «Նաիրիտը» արդեն փակել ենք: Մենք ենք մեր բախտը տնօրինողները և ոչ Ռիժկովը:

Քանի պիկետը կա, «Նաիրիտը» չի՛ գործի:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— Ի՞նչ վերաբերում է «Նաիրիտին», ես չեմ հավատում, որ Հայաստանում այլ «Նաիրիտներ» չլինեն, որոնք 14 միլիարդի արտադրանք չունենան: Իսկ մեր «փառապանծ» որոշ մտավորականներ փորձում էին ապացուցել, որ Հայաստանըն անկախանալով, սովից կվերանա: Իսկ պարոն Ռիժկովին նամակ չեմ ուզում գրել: «Նաիրիտը» մենք կփակենք: Կեցցե պիկետը...

Թ. Տ.— Գնալով ուժեղանում է Խորհրդային Հայաստանից արտասահմանյան տարբեր երկրներ՝ գլխավորապես Ամերիկայի Միացյալ Նահանգներ մեկնող հայ ընտանիքների թիվը: Ինչպե՞ս եք դուք վերաբերվում այդ երևույթին, ի՞նչ եք մտածում նման մարդկանց մասին: Զուգահեռ՝ ի՞նչ կասեիք Ազատ և Կամո գյուղերի հետ առնչվող տխուր իրողության մասին:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԿԱՐԻՆԵ.— Վերջերս մեծացավ այն մարդկանց թիվը, որոնք իրենց հայրենիքը լքում են և գնում արտասահման՝ ասելով, որ այնտեղ ամեն ինչ առատ է, լավ է, գեղեցիկ: Միևնույն է, լավ լինի այնտեղ թե վատ՝ նրանք իրավունք չունեն լքել իրենց մայր հայրենիքը: Իսկ լքողներին ես կանվանեմ միմիայն դավաճաններ: Իսկական հայը չի մտածի միայն իր մա-

 սին: Եվ ո՞ւր են գնում, ի՞նչ պատասխան են տալու իրենց մայր Հայաստանին, ի՞նչ պատասխան են տալու իրենց խղճին: Չէ՞ որ հայ ժողովուրդը սրանից ավելի վատ օրեր է տեսել:

ՔԱՄԱԼՅԱՆ ՎԱՐԴԳԵՍ.— Գնացողները իրենց խղճին պիտի հարց տան՝ ո՞ւր ենք գնում, ո՞ւմ մոտ: Ես չեմ հարգում և ընդունում այն մարդկանց, ովքեր փորձում են մեզ ետ պահել անկախությունից, մեջտեղ բերելով պանթուրքիզմի ու պանիսլամիզմի գոյությունը: Հարցիս պատասխանեք, պարոններ, ո՞ր երկիրն էր, որ ետ կանչեց իր զորքերը Արևմտյան Հայաստանից, թույլ տալով Թուրքիային գրավելու այն: Ո՞ր երկիրը վերացրեց մեր նորաստեղծ պետականությունը: Ո՞ւր են պանթուրքիզմն ու պանիսլամիզմը, մշտական բարեկամն ու մշտական թշնամին:

Կամոն և Ազատը հայաթափեց Մոսկվան, բայց այդ տեղի չէր ունենա, եթե այնտեղ ապրեին իսկական հայեր: Կամոն և Ազատը եկան ապացուցելու լոքանով—ռուստովսկիական գիծը, որն այսօր Մոսկվան թուրքի օգնությամբ շարունակում է իրագործել՝ Հայաստանն առանց հայերի...

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ ԱՐՄԱՆ.— Հայրենիքից մեկնելը միշտ էլ մեզ մոտ եղել է: Ես դա չեմ ընդունում և չեմ քննադատում, չընայած այս պրոցեսը միշտ էլ եղել է, և, դժբախտաբար, հայերիս մեջ ավելի է արտահայտված:

Եվ ընդհանրապես, երբ հայը Հայաստանից մեկնում էր Կրասնոդար ապրելու, մանավանդ մի քանի տարի առաջ, չէին քննադատում, իսկ երբ գնում է ԱՄՆ, քննադատվում է:

Գաղթողներին նույնպես պետք է հասկանալ, քանի որ նրանց այդպիսի ծանր վիճակի մեջ ենք գցել հենց մեզ մոտ՝ Հայաստանում...

ԳԱԼՍՏՅԱՆ ՔՆԱՐԻԿ.— Եթե այս օրերին էլ հայերը հեռանում են հայրենիքից, փախչում հայ ժողովրդի առաջ ծառացած դժվարություններից, նրանք դավաճաններ են: Հայրենիքը վտանգի և վերածնության մեջ է, մեզ հետ չեն ուրախանում, մեր ցավը չեն կիսում: Ոչ մի պատճառաբանություն չի կարող արդարացնել նրանց փախուստը:

Լքեք հայրենիքը, բայց հայ ժողովուրդը արժանավոր զավակներ շատ ունի, և նրանք կհոգան հայրենիքի ցավերը, կապրեն հայրենի հողում, հայրենիքի համար և. եթե հարկ լինի, կմեռնեն նրա անկախության և ազատության համար:



## ԺՊԻՏՆԵՐ

Նամակները՝ «Հերդա Ֆոն Նուսսինկ» ստորագրությամբ, որոնցում «միայնակ ու տարեց ազնվականուհին» առաջարկում է հասցետիրոջը՝ դառնալ իր մեծ կարողության միակ ժառանգորդը, վերջերս ուղարկվեցին Արևմուտքի մի քանի ճանաչված մարդկանց: Համարյա բոլորն էլ այդ առաջարկությունը հիացմունքով ընդունեցին: Օրինակ, կինոդերասանուհի Լիզա Մինելլին պատասխանեց, որ ընտացվելիք ժառանգությունը իր համար «ոչ միայն ուրախություն է, այլև պատիվ»: Հանրահայտ երգչուհի Դոննա Սամերը հեռագիր ուղարկեց. «Ես ցնցված եմ Ձեր հրաշալի նամակից: Ձեր առաջարկը ինձ երջանկացրեց»: Հիացական պատասխաններ ստացվեցին ուրիշներից էլ: Շատերը նույնիսկ առաջարկեցին անմիջապես մեկնել փրաու Ֆոն Նուսսինկի մոտ, որպեսզի կատարեն անհրաժեշտ ձևականությունները (նրանց թվում էին Ռեագանի նախկին դիկտա-



Նկարը՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

տոր Իդի Ամին և «աշխարհի ամենահարուստ մարդը»՝ միլիոնատեր Կոշագին): Բայց մի քանիսն էլ հայտարարեցին, որ ժառանգությունը կօգտագործեն բարեգործական նպատակներով, այդ թվում՝ Ռ. Նիկսոնը և Բրիջիդ Բարդոն:

Ավաղ, անձկալվելիք կապիտալը ժառանգորդներից ոչ ոք ստանալ չէր կարող, քանի որ «Հերդա Ֆոն Նուսսինկ» անունով աշխարհում ոչ ոք չի եղել: Այս կերպ կատակել էր արևմտագերմանացի ուսուցիչ Վ. Բորնեմանը:

**Ֆրանսիայում գրող Ալֆոնս Ալլեն ավելի շատ հայտնի է իր սրամտություններով, քան գրական ստեղծագործություններով, որոնց քանակն ավելի շատ է, քան Վիկտոր Հյուգոյի թողած ժառանգությունը:**

**Ահա Ալֆոնս Ալլեի մի քանի սրամտությունները.**

● — Գիտե՞ս,— մի կին ասում է իր ընկերուհուն,— տասը տարվա համատեղ կյանքում ամուսնուս հետ վիճել ենք ընդամենը մի անգամ:

— Ի՞նչ ես ասում, ուրեմն դուք իրար համար չեք ստեղծված:

● — Ծույլը նա է, ով չի ձևացնում, թե աշխատում է:

● — Ադամ, ինչո՞ւ ուշ վերադարձար, ո՞ւմ հետ էիր երեկոն անցկացնում:

— Ինչեր ես դուրս տալիս, Եվա, ախր դրախտում միայն երկուսով ենք:

Համենայնդեպս, երբ Ադամը պառկեց քնելու, Եվան մի լավ հաշվեց նրա կողերը:

● Վեճից հետո տրտմած ամուսինն ասում է կնոջը.

— Վստահ եմ, որ իմ մեռնելուց դու մի կաթիլ արցունք էլ չես թափի:

— Բայց ինքդ ես ասում, որ ես ամեն դատարկ բանի համար լաց եմ լինում:



1919 Թ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՏՈՆԱԿԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Հ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.:

ԻՆԴԵՔՍ՝ 77808

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.